ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

## ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Լռել են ձյան տակ անտառ ու ձոր,
Եվ չի զրնգում աղբյուրը զանգ,
Ամեն ինչի մեջ կարոտ կա խոր,
Ամեն ինչի մեջ՝ ծով երազանք։
Մի սպասում կա ամեն ինչում,
Կարծես մի երգ է ծորում անվերջ,
Որ առանց ձայն է միայն հնչում
Հեռու հանդերում, անտառի մեջ։
Պարում են անհոգ հողմերը պաղ,
Սառույց է ուսել գետը ձորում,
Աշնան հերկերի ննջը խաղաղ
Ձմռան անդորրն է մեղմ օրորում։
Փակվել է սարի ճամփան ոլոր,
Երկինքը ձյուն է մաղում բարակ,
Չկան դաշտերում արտույտ ու լոր,
Արդյոք որտե՞ղ են հիմա նրանք։
Մի սպասում կա ամեն ինչում,
Կարծես մի երգ է ծորում անվերջ,
Որ առանց ձայն է միայն հնչում
Սարում ու հանդում, անտառի մեջ։

## ՁՄՌԱՆ ԵՐԵԿՈՆ

Ձմռան երեկոն իջնում է կամաց,
Բերում լռություն մի խորհրդավոր,
Նոր ձյուն է մաղում երկինքն ամպամած,
Ոտնահետքերը ծածկելով բոլոր։
Թեյնիկն է երգում կրակի վրա,
Վառարանի տակ փիսիկն է քնել,
Զրույց է անում ձեր պապիկն ահա,
Ժպտալով վառում ծխամորճը կեռ։
Հայրիկը հակված մի գիրք է կարդում,
Ռադիոն երգում է, նվագում դանդաղ,
Լապտերը բակի իր աչքն է թարթում,
Իսկ ես Վաչիկին ասում եմ ուրախ՝
Տեսնո՞ւմ ես, Վաչիկ, ձմեռ է ու բուք,
Ձյունը ծածկել է ճամփա ու պուրակ,
Ինչքա՜ն լավ է, որ տուն ունեք տաքուկ
Եվ շեն օջախում՝ խնդում ու կրակ,
Ինչքա՜ն լավ է, որ ձեր մեծ մառանում
Իր շոգ ու շնչով ամառն է նստել,
Աշունն է նստել գույնով վառվռուն,
Ծով բարիքներով ժպտում է այնտեղ։
Ինձ լսում է լուռ Վաչիկը նստած՝
Դրսում հողմերի սյունն է բարձրանում,
Եվ սրտում որպես գարնան երգ ու կանչ
Հայրենի խաղաղ տունն է քաղցրանում։

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12 1964 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՆԿՈՒՂԻ ԱՍՏԻՃԱՆՆԵՐԻ ՎՐԱ

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ



— Տե՛ս, մեզ է նայում,— ասաց աղջիկներից մեկը, որ կապույտ շրջազգեստ էր հագել։

— Նա մեզանից վախենում է,— ասաց մյուսը, որ հագել էր սպիտակ շրջազգեստ։

Երկուսն էլ իրար էին նայում լայն բացված աչքերով, հետաքրքրությամբ, նույնիսկ զարմանքով, փորձելով հասկանալ իրենցից յուրաքանչյուրի այդտեղ հայտնվելու պատճառը։

Աղջիկները կլինեին վեց-յոթ տարեկան, և կարճ կտրած մազերին նրանց մայրերը սպիտակ ու լայն, հսկայական թիթեռների նմանվող ժապավեններ էին կապել։ Նա, որ հագել էր սպիտակ շրջազգեստ, Անահիտն էր, իսկ կապույտ շրջազգեստովը՝ Կարինեն։ Երրորդը՝ կատվի մի փոքրիկ, շատ փոքրիկ ձագ էր։ Նա կծկվել էր նկուղ տանող աստիճանների վրա և իր մեծ ու կատվի համար զարմանալիորեն սև աչքերով նայում էր աղջիկներին։ Նա ամբողջովին մոխրագույն էր, շատ հասարակ, մոխրագույն և միայն քթի ծայրն էր սպիտակ։ Բակում ոչ ոք չգիտեր, թե որտեղից է հայտնվել նա, և բոլորից շատ երևի ինքը՝ կատվի ձագը, թեև նրա հիշողության մեջ աղոտ կերպով մնացել էին հարմարավետ խոհանոցի պատկերը, պատի տակ դրված հին թախտը, որ ուներ չորս հաստ ու կոպիտ ոտքեր և իր մոր տաք ու գգվող մարմինը։ Աղջիկների մեջ նա տեսնում էր նրանցից մեկին, որ այսօր մի հարյուր անգամ քաշել էր իր պոչից և անխնա տանջել իր փոքրիկ ու թույլ մարմինը։ Նրա աչքին բոլոր մարդիկ չափազանց իրար նման արարածներ էին։

— Ես նրան կվերցնեմ,— ասաց Անահիտը։

— Ինչի՞դ է պետք։

— Նա լավն է։

Մինչ այդ, Կարինեի համար բոլորովին միևնույն էր, թե որտեղից է հայտնվել կատվի ձագը և ով կվերցնի նրան։ Նույնիսկ նա խղճացել էր այդ փոքրիկ ու անօգնական կատվին, երբ տղաները տանջում էին նրան։ Հիմա չգիտես ինչու նա հիշեց, որ առավոտյան Անահիտը պոկել է իր տիկնիկի մի թևը։ Լավ տիկնիկ էր, բաց, շատ բաց գույնի մազերով և երկնագույն աչքերով, որոնք պառկեցնելիս փակվում էին երկար ու կապույտ թարթիչների տակ։ Իսկ Անահիտը պոկել էր այդպիսի հրաշալի տիկնիկի մի թևը։ Դա պատահաբար էր եղել, բայց ի՞նչ կարևոր էր, երբ տիկնիկը արդեն մնացել էր առանց մի թևի։ Կարինեն այդ բոլորը վաղուց մոռացել էր, բայց հիմա հիշեց։

«Անահիտը փիսիկ կունենա,— մտածեց Կարինեն,— իսկ իմ տիկնիկի մի թևը չկա»։

— Զզվելի է,— ասաց նա։

— Լավն է,— գլուխը շարժեց Անահիտը։

— Ամբողջովին մոխրագույն է,— շուրթերը ուռեցրեց Կարինեն,— լինում են ավելի լավ փիսիկներ։

— Բայց ես կվերցնեմ նրան,— ասաց Անահիտը,— նա ամենից լավն է։

Անահիտը մոտեցավ կատվի մոխրագույն ձագին։ Նա ետ-ետ գնաց մինչև աստիճանի ծայրը և տխուր մլավեց. ավելին նա չէր կարող։ Անահիտը վերցրեց նրան։ Նա նստեց պատի տակ ընկած քա-

րի վրա և փոքրիկ կատվին դրեց իր ծնկներին։

— Զզվելի է,— կրկնեց Կարինեն։

Անահիտը նայեց կատվի ձագի սպիտակ դնչիկին և չհավատաց նրան։

— Լավն է,— արդեն երրորդ անգամ կրկնեց նա։

— Գցիր գնանք,— շարունակեց Կարինեն։

— Նա մենակ էր, բոլորովին մենակ,— Անահիտը շոյեց ձագի մեջքը, որից սև կուչ եկավ,— ես կվերցնեմ նրան։

Կարինեն մտածեց, որ ինքն էլ հաճույքով կվերցներ այդ փոքրիկ կատվի ձագը։ Բայց նա չէր մոռանում, թե ինչպես է Անահիտը այսօր պոկել իր տիկնիկի թևը։

— Դու պոկեցիր իմ տիկնիկի թևը,— ասաց նա։

Անահիտը բարձրացրեց գլուխը։

— Հանկարծ եղավ։ Բոլորովին հանկարծ։ Ես էլ չիմացա, թե ինչպես եղավ։

Կարինեն չպատասխանեց նրան և շրջվելով հեռացավ։

Անահիտը ձեռքով, որքան կարող էր զգույշ, շոյեց կատվի ձագի մեջքը։ Փոքրիկ և մոխրագույն կատուն կամաց-կամաց հանգստացավ և կծկվեց նրա ծնկների վրա։ Այդպես ավելի լավ էր, քան նկուղի սառը աստիճանների վրա, և նա իրեն պաշտպանված զգաց։ Անահիտը նայում էր նրա սպիտակ դնչիկին, կլոր և արտասովոր սև աչքերին, որոնց մեջ նարնջագույն կայծեր կային։ Եվ նա այդ պարզ ու մաքուր աչքերի մեջ լայն ու գեղեցիկ աշխարհ տեսավ։ Բակը նրան թվաց ամենագեղեցիկ ու հրաշալի անկյունը աշխարհի վրա։ Արևը դարձավ ճիշտ մի այնպիսի փոքրիկ գունդ, ինչպիսին երևում էր սովորական աչքով, և սուզվեց կատվի ձագի սև ու ջինջ աչքերի մեջ։

Կարինեն միացավ մի քանի տղաների ու աղջիկների, և նրանք բռնոցի խաղացին։ Կարինեն կավիճի մաշված կտորով գիծը այնպես քաշեց, որ Անահիտը մնաց գծի մեջ։ Ամեն անգամ Անահիտի մոտով անցնելիս նա դիտմամբ կպչում էր նրան։

— Անահիտը խանգարում է,— ասաց նա,— ես չեմ խաղում,— չգիտես ինչու նա իրեն վիրավորված էր զգում։

Նրա կարծիքով Անահիտը մեղավոր էր, որովհետև պոկել էր իր տիկնիկի մի թևը, որովհետև խանգարում էր իրեն ազատ խաղալ և բացի դրանից, նա գրկել էր կատվի ձագին և ուզում էր իրեն վերցնել։

— Դուրս արի,— Անահիտին մոտեցավ շեկ մազերով Հրաչիկը։

— Ինչու՞։

Հրաչիկը բռնեց կատվի ձագի մեջքից և մի կողմ նետեց։ Նրա մոխրագույն և անօգնական մարմինը մի պտույտ գործեց և ընկավ գծից այն կողմ։

— Ինչու՞,— հազիվ կրկնեց Անահիտը։

— Խանգարում ես,— ասաց Հրաչիկը։

Անահիտը ուզեց ինչ-որ բան ասել, բայց նրա աչքերը լցվեցին։ Նրա մազերի ժապավենը նմանվեց մի թևը կորցրած թիթեռի։

Կարինեն կարծես ժպտաց ու մտածեց. «Ճիշտ է, մեղք էր փիսիկը, բայց չէ՞ որ իմ տիկնիկն էլ էր մեղք»։

Անահիտը մոտեցավ կատվի ձագին, որ ընկնելուց հետո մնացել էր նույն դիրքով։ Նա գրկեց փոքրիկ կատվին ու նրա աչքերում ցավ և թախիծ տեսավ։ Նա այդ բոլորը չհասկացավ, այլ միայն զգաց, թե որքան տխուր ու վատ է հիմա փիսիկի համար։ Աղջիկը գնաց բակի ամենահեռավոր անկյունը և նստեց այնտեղ։ Նա շոյեց կատվի ձագի գլուխը, և վերջինիս ականջները հնազանդությամբ ծալվեցին։ Աղջիկը նորից նայեց կատվի ձագի սպիտակ դնչիկին, նրա սև ու մաքուր աչքերին և մոռացավ քիչ առաջվա դեպքը։ Կատվի ձագի կլոր աչքերում գեղեցիկ ու հեքիաթային աշխարհ կար։ Արևը կախվել էր չորս կողմից բար-



Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ



ծըր շենքերով շրջապատված բակի վրա, վառ և հսկայական լուսամփոփի նման։

Կարինեն, Հրաչիկը և մյուսները բռնոցի էին խաղում, և գծից դուրս եկողը դուրս էր մնում խաղից։

— Կարինե,— հարցրեց Անահիտի մայրը,— որտե՞ղ է Անահիտը։

Կարինեն հիշեց, որ անցյալ տարի ինքը գտել էր ճիշտ մի այդպիսի կատվի ձագ, իսկ մայրիկը բարկացավ ու խլեց իր ձեռքից։ Մայրիկները երբեք չեն թողնում, որ իրենց աղջիկները բակում խաղան պատահական կատվի ձագերի հետ։

— Նա խաղում է կատվի հետ,— Կարինեն մատով ցույց տվեց բակի ամենահեռավոր անկյունը,— մոխրագույն կեղտոտ կատու է,— ասաց նա։

Կարինեն թողեց խաղը և տեսավ, թե ինչպես Անահիտի մայրը անցավ բակի միջով։ Մայրը աղջկա ծնկների վրայից վերցրեց կատվի ձագն ու հեռուն դրեց։ Հետո նա Անահիտի ձեռքից բռնած անցավ բակի միջով և տուն գնաց։

Կարինեն շարունակեց բռնոցի խաղալ։ Քիչ հետո մի ոտքի վրա թռչկոտելով, նա նայեց վերև և պատշգամբում տեսավ Անահիտին։ Անահիտը պետք է որ տխուր լիներ, և նա, առանց չարության, ուրախացավ այդ մտքից։ Նա ինքն էլ լավ չէր պատկերացնում իր ուրախության պատճառը, բայց քանի որ ուրախ էր, ավելի աշխուժորեն թռչկոտեց մի ոտքի վրա։

Մոխրագույն ու փոքրիկ կատվի ձագը քայլեց պատի տակով։ Ամբողջ ժամանակ նա գնում էր քսվելով պատին և ոչ մի անգամ չհեռացավ։ Այդպես էլ նա շրջանցեց բակի կեսը և նորից հասավ նկուղի աստիճաններին։ Բոլորից աննկատելի նա կծկվեց աստիճաններից վերջինի վրա։

Շուտով Կարինեին ձանձրացրեց բռնոցի խաղալը, և նա նկուղի վերջին աստիճանի վրա տեսավ կատվի ձագին։ Կարինեն իջավ նրա մոտ ու կանգնեց գլխավերևում։ Նա իր ոտքի ծայրը մոտեցրեց կատվի ձագի սպիտակ դնչիկին։ Սա թույլ մլավեց ու ետ ծողաց։ Կարինեն ինքն էլ չիմացավ՝ ուզում էր խփել նրան, թե՝ ոչ։ Բայց Կարինեի համար հիմա նորից բոլորովին միևնույն էր, թե որտեղից է հայտնվել այդ կատվի ձագը և ինչ կլինի նրա հետ։ Նա իր փոքրիկ ոտքով նորից հրեց կատվի ձագին։ Սա նորից մլավեց և սեղմվեց սառը և գորշ քարե պատին։

«Իսկ ես տիկնիկ ունեմ,— մտածեց Կարինեն,— ճիշտ է, մի թևը պոկված, բայց չէ՞ որ նա դարձյալ իմն է։ Իսկ Անահիտը ո՛չ տիկնիկ ունի և ո՛չ էլ փիսիկ»։

Կարինեն շուռ եկավ և բարձրացավ նկուղի եղծված երեք աստիճանները։

Անահիտը դեռ կանգնած էր պատշգամբում և ներքև էր նայում։ Նա տխուր էր, որովհետև նրան պակասում էր մի բան, որ ուներ քիչ առաջ։

Կատվի մոխրագույն ձագը շարունակում էր սեղմված մնալ սառը և գորշ պատին։

Անահիտը այդպես էլ չհասկացավ, որ իրեն հիմա պակասում էր այն, ինչ քիչ առաջ տեսել էր կատվի ձագի մաքուր ու անմեղ աչքերում։

Կարինեն հասավ բակի կենտրոնին և նրա սպիտակ ժապավենը նմանվեց արձակ ու արևոտ դաշտում թռչկոտող անհոգ թիթեռի։

Շենքերը բարձր էին, չորս կողմից շրջապատում էին բակը, և արևը ընկնում էր միայն բակի կենտրոնը, չտաքացնելով նկուղի սառը աստիճանները և գորշ, քարե պատը։

## ՉԵՄ ՄՈՌԱՆԱ

*ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ*

Չեմ մոռանա մեր ճամբարը,
Մեր ճամբարի ճանապարհը,
Ճանապարհի ամեն քարը
Չեմ մոռանա ես։

Առուների գլգլոցը,
Ծիտիկների ծլվլոցը,
Մեր խարույկի կարմիր բոցը,
Ծաղկունքը պես-պես։

Ճանապարհը արդեն փակ է,
Այդ բոլորը ձյունի տակ է,
Իսկ կարոտը այնքան տաք է,
Երբ հիշում եմ ես՝

Առուների գլգլոցը,
Ծիտիկների ծլվլոցը,
Մեր խարույկի կարմիր բոցը,
Ծաղկունքը պես-պես։



# ՊԱՏԻԺ

ԳԱՐԵԳԻՆ ՍԵՎՈՒՆՑ

Մեր վրանը խփել էինք բարձր լեռան լանջին: Մեզնից ներքև ուրիշ լեռներ էին, ապա սկսվում էր անտառը: Հեռվում երևում էին Խուստափա սարը և Արամազդը: Արդեն մի ամիս էր, ինչ ես ու ընկերս՝ Հակոբը, այդտեղ հանքատեսակներ էինք որոնում: Միասին արթնանում էինք, միասին ուտում ինչ-որ ունեինք, ապա երկրաբանի մուրճերով փորփրում գետինը և, երեկոյան հոգնած, միասին պառկում քնելու:

Մեզնից բացի երբեմն այդտեղ երևում էին հովիվները՝ իրենց հոտերով ու շուտով չքանում տեսողությունից: Նրանցից հետո ոչ ոք չէր հայտընվում Զանգեզուրի բարձրաբերձ այդ սարերում: Ամայություն էր տիրում մեր շուրջը ու չտեսնված լռություն:

Մի օր Հակոբն ասաց.

— Դու մնա, Պարգև, ես գնամ Լինք, համ աշխատավարձս ստանամ, համ էլ ուտելու բան բերեմ: Չորս-հինգ ժամից կվերադառնամ:

Դեմ չէի, մնացել էինք առանց կոպեկի: Հովիվներից մենք կաթ ու մածուն, պանիր ու ոչխար էինք գնում: Ոչխարը մորթում էինք, միսը խորովում կամ եփում ու ուտում: Առանց փողի նրանք մեզ ոչխար չէին տա:

Հակոբը գնաց վաղ առավոտյան: Մի կտոր հաց էր մնացել ու պանրի փշրանքներ. կերա, գնացի աղբրից ջուր խմեցի և, մուրճս վերցրած, զբաղվեցի իմ գործով:

Կեսօրին մոտ արդեն աչքս ճամփին էի պահում, շուտ-շուտ նայում էի այն արահետին, որով պետք է վերադառնար Հակոբը: Ուրիշ դեպքում սոված երկար կարող էի դիմանալ, բայց այդ օրը սովից աղիքներս իրար էին խառնվում: Հակոբին խնդրել էի իր հետ բերել մեղր, թարմ լավաշ, կանաչ սոխ ու բիբար, որ շատ եմ սիրում: Մի քիչ քայլում էի, նստում ու մտածում՝ահա, ուր որ է, Հակոբը կգա, կնստենք աղբյուրի մոտ, լավաշի մեջ կփաթաթեմ պանիրն ու կանաչ սոխը. կկտրեմ սոխս, մինչև մի լավ զառ գնենք, խորոված անենք:

Բայց Հակոբը չէր երևում:

Արևը վաղուց էր զենիթից թեքվել դեպի Արևմուտք: Սարերի լանջերին ստվերներ էին ծգվել: Ականջս շարունակ ձայնի էի պահում, սակայն բացի աղբրի ջրից գոյացող վտակի խոխոջից, ոչինչ չէի լսում: Ինձնից բավական ներքև երևաց մի բազե. տիրաբար, անձայն ճախրեց օդում, գնալով դարձավ հազիվ նկատելի մի կետ ու անհայտացավ:

Դարձյալ ես մնացի մեն-մենակ:

Ո՞ւր կորավ այդ Հակոբը, հը՞, ախր ուտել եմ ուզում: Առաջ ես ծիծաղում էի Հակոբի վրա, երբ նա խոտերի մեջ սինձ, թթվաշ և էլի ուրիշ կանաչի էր գտնում ու ուտում: Ասում էի՝ էլի արածու՞մ ես: Հիմա ես ինքս էի պատրաստ արածելու, որպեսզի դիմանամ մինչև նրա գալը:

Լավ էր, այդ ժամանակ մեր սարի լանջին դանդաղաշարժ ամպի պես ոչխարի մի հոտ երևաց: Քայլերս ուղղեցի հոտի կողմը, հովվին ասացի.

— Ընկերս գնացել է աշխատավարձ ստանալու, դեռ չի եկել. մի բան չունե՞ս ուտելու:

— Բա խի՞ չունեմ, քեզ մատաղ,—պատասխանեց նա,— է՛կ, է՛կ ըստեղ նստիր: Ճիշտ ա, հացս վերջացել ա, ամա կաթ միշտ կա ու կա:

Տարեց, արդեն ճերմակած այդ մարդը բռնեց մի սև ոչխարի վիզը, դուրս քաշեց հոտից, կթեց, հետո թե.

— Խմի՛ր, քեզ մատաղ, իմանայի սոված ես՝ կերած հացս բկովս չէր անցնի: Ուզու՞մ ես էգուց քեզ համար հաց բերեմ:

Շնորհակալություն հայտնեցի նրան, խնդրեցի՝ նեղություն չքաշի, որովհետև ընկերս, ուր որ է, գալու է, իր հետ ուտելիքներ է բերելու: Քանի դեռ ոչխարի հոտը մոտ էր, մենք նստած զրուցում էինք:

— Մինչև քո գալը, քեռի Ալեքսան,— այդպես էր նրա անունը,—մտածում էի. այս սարերում որսալու մի անասուն կամ թռչուն էլ չկա, որ մարդ սոված ժամանակ խփի, յոլա գնա:

— Ո՞վ է ասում՝ չկա,— առարկեց նա,— անցյալ



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

տարի հենց էս աղբրի գլխին արջը մեր կոլխոզի կովին ցրիվ տվեց:

Մենք ստիպված էինք ընդհատել մեր զրույցը: Ոչխարի հոտը ծռվեց դեպի սարի մյուս լանջը, իմ զրուցակիցը վեր կացավ տեղից և, երկար մահակի ծայրով ցույց տալով ներքևի անտառը, ավելացրեց..

— Հրեն հա՛, էն ձորերում շատ արջեր կան, էնտեղից են գալիս...

Նա հրաժեշտ տվեց ինձ ու գնաց:

Ես նորից մնացի մենակ: Շուտով ներքևի ձորերն սկսեցին մթնել: Մութը սարերի լանջերով կամաց-կամաց վեր էր բարձրանում: Ու՞ր կորավ այդ Հակոբը, ինչու՞ չի գալիս: Մեկ ուզում էի թողնել վրանը, մեր ունեցվածքը, գնալ նրա հետևից, մեկ էլ մտածում էի՝ մի կածանով ես կիջնեմ, ինքը մյուսով վեր կբարձրանա, իրար չենք հանդիպի: Ավելի լավ է, մի քիչ էլ սպասեմ:

Մութն ընկնելուց հետո քաշվեցի վրանը, պառկեցի, բայց աչքերիս քուն չէր գալիս: Ականջս որսում էր դրսի ամենաչնչին ձայնն անգամ: Շրջապատում իշխում էր բարակ, կեմի պես բարակ ու արագավազ վտակի միալար քչքչոցը: Հակոբի ոտնաձայները չէի լսում: Չգիտեմ ինչու, գլխիցս դուրս չէր գալիս հովիվ Ալեքսանի պատմությունը: Հիմա եթե արջը հանկարծ ներս մտնի մեր վրանը, ի՞նչ պետք է անեմ:

Մոտս դրել էի երկրաբանի մուրճը: Մի երկու անգամ ձեռս տարա, ստուգեցի այն: Ինչ կուզեք ասեք, մենակությունը վատ բան է: Նման տեղեր մարդ միշտ ընկերով պետք է լինի: Մեր կանոնադրության մեջ էլ այդպես է գրված:

Տեսա գիշերն արդեն կիսվել է, իսկ ես դեռ արթուն եմ, ստիպեցի ինձ քնել. մեկից հաշվեցի մինչև հարյուր, հետո նորից հաշվեցի ու քնեցի:

Առավոտյան արթնացա՝ Հակոբը դեռ չկար: Նա եկավ կեսօրին: Հարցնում եմ.

— Ինչո՞ւ ուշացար:

Ծիծաղելով պատմում է.

— Պատահեցի Վարոյին, թե՝ գնանք մեր տուն, մի քիչ նստենք: Դու մի ասի, նրանց տանը քեֆ է, ոչխար են մորթել, խորոված գցել: Շիվանիծորի գինի բերել...

Զայրույթս զսպած լսում էի նրան: Եղավ մի պահ, երբ քիչ էր մնում գոռամ. «Անամոթ, իսկ ընկերոջդ մասին չէի՞ր մտածում»: Ոչինչ չասացի: Իմ սիրտը շահելու համար նա ուսապարկից հանում ու ինձ էր ցույց տալիս իր հետ բերած ուտելիքները:

— Ահա քեզ մեղր, ահա քո սիրած սոխն ու բիբարը...

Լուռ նայեցի բերած ուտելիքներին և ասացի.

— Լավ, Հակո՛բ, հիմա էլ դու մնա, ես գնամ աշխատավարձս ստանամ: Երեկոյան կգամ:

Դե՛, նա ի՞նչ կարող էր ասել: Գնում էի ու մտածում. «Լավ, Հակո՛բ, գիշերս էլ քեզ մենակ կթողնեմ, մի տեսնեմ ո՞նց ես զգում»:

Հետևյալ օրն առավոտյան վերադարձա և ինչ տեսնեմ՝ մեր վրանում մի իսկական ավերածություն է կատարվել: Մի գիշերվա ընթացքում Հակոբը դեղնել էր, նիհարել: Նրա բերած ուտելիքները ցրված էին գետնին: Մեղրի ամանը շուռ էր տված: Նա իր տեղաշորը հանել էր, փռել արևի տակ: Հարցնում եմ՝ ի՞նչ է պատահել: Դեռ սարսափն աչքերում՝ նա ինձ է նայում ու ասում.

— Մահից եմ պրծել:

Չեմ հասկանում նրան. ի՞նչ մահի մասին է խոսքը:

— Մի կարգին պատմիր, տեսնեմ ինչ է եղել:

Նա կարճ պատմեց.

— Գիշերս մեկը մահճակալս շարժեց: Կարծում էի, թե դու ես: Աչքերս բաց արեցի, տեսա մի աժդահա արջ մռութը կոխել է ուտելիքի արկղի մեջ, խառնում է: Քիչ մնաց սրտաճաք լինեմ: Ուրիշ բան չկարողացա անել, գլուխս վերմակով ծածկեցի, շունչս պահած սպասում էի ու մտածում. հիմա, ուր որ է, իմ փորն էլ կխառնի: Արկղը խառնելուց հետո դա իմ ականջի տակ

ծանր շնչում էր, հոտոտում օդը։ Հետո չգիտեմ թե ինչ կատարվեց ինձ հետ։ Մեկ էլ աչքերս բաց արեցի, տեսա վրանում արջ չկա...

Նրան լրիվ հավատում էի, որովհետև աչքովս տեսնում էի արջի թողած հետքերը։ Նա ոչ միայն կերել էր մեր ուտելիքի պաշարը, այլ մի մասն էլ ցրիվ էր տվել, տրորել ոտքերի տակ։ Զբաղվարարվելով դրանով, գիշերվա անկոչ հյուրը, կարծես մեզ ծաղրելու համար, կեղտոտել էր վրանում, նոր գնացել։ Իմ մեջ ափսոսացի, որ այդ գիշեր բացակայել եմ։ Երկուսով մենք նրան գետին կգլորեինք և խորոված լավ միս կուտեինք։

Ինձ համար հասկանալի չէր մի բան՝ ինչու՞ Հակոբի ներքնակն ու վերմակը թրջված են։ Սկզբում նա ցանկանում էր ինձ խաբել, ասում էր՝ հենց այնպես, արև եմ տվել...

— Հա՛, արև ես տվել,— համառեցի ես,— տեսնում եմ, բայց ինչու՞ են թրջված։

Եվ նա ստիպված էր խոստովանել։

Քիչ էր մնում ասեի՝ դա դեռ քիչ է քեզ, ինչու՞ էիր ինձ մենակ թողնում։ Ես ներքուստ ամաչում էի իմ արածից։ Ցանկանալով պատժել ընկերոջս, բնավ չէի ենթադրում, որ նրա գլխին այդպիսի մեծ փորձանք կգա։

*ԱՐԱՐԱՏ ԱԴՎԱՁՅԱՆ*

# ՄԵԿՈՒԺԱՐԸ

Նա կտրում է դալար շիվը
Մոտիկ ծառից,
Հանգիստ չունենք հավն ու ճիվը
Նրա ձեռից։

Կատուների պոչերն է նա
Իրար կապում,
Սագի ճերմակ մեջքի վրա
Թանաք թափում։

Մինչ իրիկուն չկա դադար
Նրա խաղին,
Զարչարում է կարմրակատար
Աքաղաղին։

Ծառի վրա ամբողջ օրը
Կքարձրանա
Եվ չի թողնի, որ սալորը
Քիչ քաղցրանա։

Նա մրգեր է ծառից թափում
Թթվաշ ու խակ,
Պարսատիկով ծտեր խփում
Ու կաչաղակ։

Թե մեկն ասի. «Խելքի բերեք,
Տղան չար է»,
Քեռին կասի. «Նրան ներեք,
Մեկուճար է»։



*Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ*

# ԿԱՐԱՊԵՏԸ

Վեր կաց, Կարո, գնա ջրի։
— Դույլերը ծանր են։
Նստիր տանը կարդա, գրիր։
— Տառերը մանր են։

Նախիրը տար դեպի արոտ։
— Հորթերը չար են։
Դու կմնաս ուլերի մոտ։
— Ինձ կչարչարեն։

Գնա դաշտում հավաքիր խոտ,
Մանգաղը սուր է։

— Ես կմնամ հովի կարոտ,
Արևը հուր է։

Այգում հով է, գնա այգի։
— Ծամփեքը քար է։
Ջեր պարտեզը դու մշակիր։
— Բահը երկար է։

...Փոքրիկ Կարո, մտերմաբար
Խոսում եմ քեզ հետ,
Ի՞նչ կլինես երբ մեծանաս,
Դառնաս Կարապետ։



# Երկնագույն ՀՈՒԼՈՒՆՔԸ

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ

## ՈՒՌԱ՛, ՄԵՆՔ ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԵՆՔ, ՈՒՌԱ՛, ՄԵՆՔ ԿԱՐՈՂ ԵՆՔ ՍԱՎԱՌՆԵԼ

Ագատա մորաքույրը բաժակները կաթ լցրեց։ Խոզապուխտով և կարագով բուտերբրոդները դարսեց ափսեի մեջ և հանկարծ հիշեց, որ անձեռոցիկները մնացել են պատշգամբում։ Իսկ երբ նա պատշգամբից ներս եկավ, զարմանքից տեղն ու տեղը նստեց, իսկ հետո սառը ջրով աչքերը արագ-արագ լվաց։

— Երա՞զ էր, ի՞նչ էր։ Ինչու՞ ինձ թվաց, թե բուտերբրոդներն արդեն պատրաստել եմ,— փնթփնթաց նա։

Միջանցքից երեխաների ոտնաձայն և փակվող դռան շրխկոց լսվեց։

— Դե, տեսա՞ր, իմ կարծիքով, մենք իսկական անտեսանելի ենք, որ կանք,— շշնջաց Պետրիկը։

Երեխաներն ուրախ-ուրախ բակ վազեցին։

Անձրևն արդեն կտրվել էր և միայն մի քանի տեղ մեծ ջրափոսեր էին մնացել։ Իսկ փոքրիկ երեխաները շատ են սիրում ջրափոսերի մոտ խաղալ և թղթե նավակներ բաց թողնել։ Այ, հիմա էլ Ագայան ու երկու փոքրիկ աղջիկ լճակներից մեկի մոտ կանգնած, հենց այն է, ուզում էին ջրամբար կառուցել, երբ հանկարծ հարևան շենքից դուրս վազեց Վալդեկը։ Պետրիկն ու Կարոլինկան իրար նայեցին։ Այ, Վալդեկին դաս տալու սքանչելի առիթ։ Նա բոլորին դիպչում է, ոչ մեկին հանգիստ չի տալիս։ Այ, հիմա էլ, տեսեք, թե ինչպես Ագայային հրեց ու գցեց ջրափոսը։ Ու հետո էլ Յանային հրեց։

Կարոլինկան և Պետրիկը սուրացին դեպի Վալդեկը։ Քիչ հետո լողլող Վալդեկը հանկարծ գորտի նման շրմփաց ջրափոսի մեջ...

— Ո՞վ հրեց ինձ,— գոռգոռաց կատաղած Վալդեկը։

Նա շրջվեց, բայց հետևում ոչ ոք չկար։ Եվ հանկարծ նա նորից շրմփաց ցեխի մեջ՝ այս անգամ արդեն անտեսանելի Կարոլինկան քաշեց նրա ոտքից և նա կորցրեց հավասարակշռությունը։

Բոլորը ծիծաղից փորները բռնել էին։ Եվ ոչ ոք չէր խղճում Վալդեկին, բոլորն ասում էին, որ տեղն է նրան։

Դե, Վալդեկի հետ հաշիվները մաքրեցին, լա՛վ դաս տվին։ Իսկ հիմա ի՞նչ անել... Պետրիկն ու Կարոլինկան նայեցին իրար։ Իսկ աշխատանք՝ ինչքան ուզես։

Այ, օրինակ, հարևան շենքում բնակվող տիկին Կոզլովսկայան հազիվ է տանում գնումներով լի պայուսակը։ Պետրիկը միշտ օգնում էր նրան։ Բայց մի՞թե միայն այն պատճառով, որ հիմա անտեսանելի է, խեղճ կինը ստիպված պիտի մենակ վերև քարշ տա այդ ծանր պայուսակը։

— Ո՛չ, պետք է օգնել,— շշուկով ասաց Պետրիկը Կարոլինկային, ու իսկույն վազեց դեպի տիկին Կոզլովսկայան։ Նա բռնեց պայուսակի բռնակից և վեր բարձրացրեց։ Իսկ կինը ուրախացած, որ պայուսակը այդքան թեթև է, ասաց հարևանուհուն.

— Այսօր ես ինձ այնքան լավ եմ զգում, որ կարծես նորից քսան տարեկան լինեմ։ Երևի խոտաբույսերից է, որ ես օգտագործում եմ վերջերս։

Հետո Պետրիկն առաջարկեց.

— Գիտե՞ս ինչ։ Գնանք այն մեծ ունիվերմագը, մի քիչ խաղանք։

— Լավ ասացիր,— համաձայնեց Կարոլինկան։

Եվ ահա նրանք թռչում էին քաղաքի վրայով։ Մեկ նստում էին շենքերի տանիքներին ու պատշգամբներին, մեկ էլ նորից օդ էին բարձրանում, ճախրում գործարանային ծխնելույզների շուրջը։ Բայց դա այնքան էլ անվտանգ բան չէր, որովհետև մերթ ընդ մերթ ուժեղ քամի էր բարձրանում, որը հեշտությամբ կարող էր նրանց բաժանել միմյանցից։ Չէ՞ որ նրանք հիմա շատ թեթև էին։ Հանկարծ Պետրիկը զգաց, որ ինքը մենակ է թռչում։ Ետ նայեց. ո՞ւր կորավ Կարոլինկան, ի՞նչ պատահեց նրան։ Հետո նկատեց, որ Կարոլինկան իր շրջազգեստի փեշով կախ էր ընկել հեռուստացույցի անտենայից։ Պետրիկն իսկույն օգնության հասավ նրան։ Բայց դա այնքան էլ հեշտ բան չէր։ Քամին շարունակ նրան մի կողմ էր քշում, և Պետրիկը ոչ մի կերպ չէր կարողանում մոտենալ օգնություն կանչող Կարոլինկային։ Նա արդեն հույսը կորցրել էր, երբ հանկարծ օգնության հասան երկու ագռավ։ Նրանք իրենց սուր կտուցներով մի

---

Սկիզբը՝ նախորդ համարում։



Պետրիկը վաճառասեղանի վրայից մի զույգ տղամարդու կոշիկ վերցրեց և հագավ ձեռքերին։ Կարոլինկան էլ ինչ-որ կարմիր սանդալներ վերցրեց, և երկու զույգ կոշիկներ իրենք իրենց սկսեցին քայլել վաճառասեղանի վրայով։

— Ա-ա-ա՜-խ, ա-ա՜-խ,— ճչաց սարսափած վաճառողը,— այս ի՞նչ բան է։

Բայց նրա հարցին ոչ ոք չպատասխանեց, որովհետև բոլորը հետաքրքրությամբ սպասում էին, թե ինչ է լինելու հետո։

— Դա ռեկլա՜մ է,— բացականչեց ինչ-որ մեկը։

Իսկ տղամարդու կոշիկները և կարմիր սանդալները շարունակում էին պարել և ուրախ դոփել. «Հո՜պ-սա՛-սա՛։ Հո՜պ-սա՛-սա՛»։

Եվ դա այնքան դուր եկավ հավաքվածներին, որ բոլորն սկսեցին ձայնակցել։ Շուտով մի այնպիսի ուրախություն տիրեց չորս կողմը, հաճախորդներն այնպես էին ծիծաղում, որ բոլորի հետ միասին սկսեց ծիծաղել նաև այդ անքաղաքավարի վաճառողը։

Հանկարծ կոշիկները կանգ առան։ Կարմիր սանդալները նույնպես, և զարմանքից քար կտրած ամբոխը լսեց, թե ինչպես հնչեցին երկու մանկական ձայներ.

— Պահանջում ենք, որ վաճառողը քաղաքավարի լինի գնորդների հետ։

Մի տեսնեիք, թե ի՜նչ կատարվեց։ Վաճառողը բազուկի նման կարմրեց և նետվեց դեպի կոշիկները, բայց սրանք իրենք իրենց եկան և դարակների վրա գրավեցին նախկին տեղերը։ Իսկ վաճառասեղանի մոտ կանգնած մարդիկ սկսեցին վրա տալ.

— Միանգամայն ճիշտ է. խնդրում ենք, որ դուք քաղաքավարի լինեք։

Պետրիկն ու Կարոլինկան շարունակեցին իրենց ճանապարհը։

երկու անգամ հարվածեցին և Կարոլինկայի զգեստը պոկվեց։

— Դուք մեզ տեսնո՞ւմ եք,— զարմացավ Կարոլինկան։

— Իհարկե,— պատասխանեցին նրանք միաձայն։

— Ախր, չէ՞ որ մենք անտեսանելի ենք։

— Դուք միայն մարդկանց համար եք անտեսանելի։ Եվ բացի դրանից, մենք գիտենք որ դու երկնագույն հուլունք ունես։ Միայն թե, հիշիր, Կարոլինկա, չի կարելի նրա հետ այդպես թեթևամտորեն վարվել։

## ԱՎԵԼԻ ԿԱՄ ՊԱԿԱՍ ՊԱՀԱՆՋՎԱԾ ՄՏՔԵՐ

Խանութում, ինչպես միշտ սովալի իրարանցում էր, ասեղ գցելու տեղ չկար։ Կարոլինկան և Պետրիկը կանգ առան կոշիկի վաճառասեղանի մոտ։ Մարդիկ այստեղ իրենց շատ հանգիստ են պահում, բայց վաճառողի տրամադրությունը ինչպես երևում էր, տեղը չէր։ Երբ պարզվում էր, որ կոշիկը շատ մեծ է կամ շատ փոքր, նա կոպտորեն վաճառասեղանին էր նետում արկղիկները և ոչ մեկին չէր ուզում մի ուրիշ զույգ ցույց տալ։

Հենց այդ պահին, երբ Պետրիկն ու Կարոլինկան մոտեցան վաճառասեղանին, փոքրիկ երեխան գրկած մի կին նրան խնդրում էր փոխել կոշիկները, որովհետև երեխայի ոտքով չէին լինում։

— Գնած ապրանքը չենք փոխում,— կոպիտ պատասխանեց վաճառողը։

— Ինձ թվում է, որ կոշիկներ վաճառող մոբարույրն այնքան էլ սիրալիր չէ,— ասաց Կարոլինկան։

— Իհարկե, սիրալիր չէ,— համաձայնեց Պետրիկը,— արի դրան մի քիչ վախեցնենք. զույգ ձեռքերը գլուխը գա։

Նրանք հիացած կանգնեցին խաղալիքների ցուցափեղկի մոտ։ Այ, այստեղ, իրոք որ, նայելու բան կար։ Կարոլինկան շատ էր ուզում գոնե մի րոպեով գրկել այդ հիանալի տիկնիկներից մեկն ու մեկը։ Նրանք զուգված-զարդարված կանգնել էին իրար կողքի։ Կարոլինկան գիտեր, որ այդ տիկնիկները մեջքի վրա թեքելիս «մա-մա» են ասում։ Ճիշտը որ ասենք, Կարոլինկան իսկի չէր էլ ուզում այդպիսի գեղեցիկ տիկնիկ ունենալ։ Գիտեր, որ այդ տիկնիկը շատ թանկ է։ Նա պար-

զապես ուզում էր մի քիչ խաղալ այդ տիկնիկի հետ։ Այո՛, այո՛, բայց ինչպե՞ս անել, որ բազմությունը չհավաքվի և բոլորը զարմանքից բերանները բաց արած չնայեն, թե ինչպես է տիկնիկը ինքն իրեն դարակից ցած իջնում։

Այդ ժամանակ Պետրիկն առաջարկեց.

— Ուզո՞ւմ ես, բարձրանամ դարակի վրա և այդ տիկնիկներից մեկը ցած բերեմ։ Դու միայն ասա որն ես ուզում։ Դե, էլ ի՞նչ ես երկար-բարակ մտածում, Կարոլի՛նկա։ Մի քիչ կխաղաս ու վերջ, այստեղ ի՞նչ վատ բան կա։ Հետո ես էլի իսկույն տեղը կդնեմ։

— Այո, բայց...— ուզում էր սկսել Կարոլինկան։

— Ո՛չ, դու էլ,— փնթփնթաց Պետրիկը և ձեռքը մեկնեց դեպի դարակը։ Կարոլինկան չհասցրեց էլ ձայն հանել. նույն պահին տիկնիկը հայտնվեց Կարոլինկայի գրկում։ Շատ մեծ տիկնիկ էր։ Կարոլինկան տիկնիկը կանգնեցրեց հատակին և ձեռքից բռնած՝ սկսեց զգույշ ման ածել։

Գնորդները այս ու այն կողմից սկսեցին բացականչել.

— Տիկնիկն ինքն իրեն քայլո՜ւմ է։ Քայլող տիկնի՜կ։ Բայց երևի շատ թանկ է։

— Տվեք ինձ, խնդրում եմ, քայլող տիկնիկներից, ա՛յ այն մեկը,— առանց ժամանակ կորցնելու՝ պահանջեց մի տիկին։

— Ի՜նձ էլ, ի՜նձ էլ,— ձայն տվին չորս կողմից, և արագ-արագ սկսեցին հերթի կանգնել։

— Ախր այդ տիկնիկները քայլող չեն,— շփոթված ասաց վաճառող կինը։

— Ինչպե՞ս թե քայլող չեն։ Հապա ինչո՞ւ է այն մեկը քայլում։ Այդ դեպքում, ա՛յն տիկնիկը տվեք։

Իսկ այդ ժամանակ Պետրիկն ու Կարոլինկան տիկնիկի ձեռքերից բռնած արագ քայլում էին միջանցքով։

— Մայրի՛կ, նա փախչո՜ւմ է,— հանկարծ ճչաց աղջիկը, որն ինչ գնով էլ լինի ուզում էր քայլող տիկնիկ ունենալ։ Հետո, թողնելով մայրիկին, նա վազեց անտեսանելի Պետրիկի և Կարոլինկայի հետևից։ Աղջկա անսպասելի հետապնդումից խուսափելու համար Կարոլինկան և Պետրիկն էլ սկսեցին վազել։ Եվ տիկնիկը, որի ձեռքերից բռնել էին նրանք, սլանում էր ամբողջ խանութով մեկ։

— Սպասի՜ր,— ծղրտաց նրանց հետևից վազող աղջիկը։ Իսկ աղջկա հետևից վազում էր մայրիկը, նրա հետևից էլ վաճառող կինն էր վազում, աշխատելով բոլորին հանգստացնել.

— Ներեցե՛ք։ Սպասեցե՜ք։ Դուք միայն մի՜ հուզվեք։ Տե՜ր աստված, այս ի՞նչ է կատարվում։

Քայլող տիկնիկը հանկարծ կանգ առավ։ Մի պահ կանգնելուց հետո նա շուռ եկավ դեպի իրեն հետապնդողները և Պետրիկի ձայնին շատ նման ձայնով ասաց.

— Ձանձրացա՜ քայլելուց։ Ուզում եմ նորից վերադառնալ իմ տեղը։

Բոլորն սկսեցին հարցուփորձ անել այդ քայլող տիկնիկների գնի մասին, իսկ Պետրիկն ու Կարոլինկան մինչ այդ արդեն տեղավորվել էին փոքրիկ ավտոմեքենայի մեջ։ Նրանք շատ վաղուց էին երազում այդ ավտոմեքենայով զբոսնել, վաղուց՝ այսինքն այն ժամանակվանից, երբ նրանք խանութ էին գալիս որպես ամենասովորական երեխաներ և ուզած ժամանակ չէին կարող անտեսա-



նելի դառնալ։ Հիմա, երբ վերջապես իրականացել էր նրանց երազանքը, Պետրիկը նստեց ղեկի մոտ։

— Պտույտ տանք,— ասաց նա, և մեքենան շարժվեց։ Դե, իհարկե, նորից խուճապ սկսվեց. բոլորը նետվեցին սուրացող մեքենայի հետևից։

— Ուզած-չուզած պետք է ցած իջնենք,— հոգոց հանեց Պետրիկը,— մեկ է, բան դուրս չի գա։ Սրանք մեզ հանգիստ չեն տա։

— Որ այդպես է, գնանք կախարդի տնակի մոտ,— առաջարկեց Կարոլինկան,— այնտեղ կարող ենք հանգիստ խաղալ։

(Շարունակելի)

# ԼԵՌԱՆ ԿՐԾՔԻ ՏԱԿ

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Քեռուս հետ մի օր ես էլ հանք մտա
Եվ ասես այնտեղ մի աշխարհ գտա.—
Մեր լեռը՝ կանգնած միշտ խաղաղ ու լուռ,
Այնինչ կրծքի տակ՝ բյուր ճամփա ու դուռ։
Ձգվում է դեմս մի թունել ահա,
Ո՞ւր է տանում նա, ի՞նչ ունի պահած։
Հասնում եմ մինչև ընդերքը խորը,
Մեկ էլ տեսնում եմ սկսվեց նորը
Ու ճյուղեր տվեց, գնաց հեռուներ
Եվ հյուսվեց ուրիշ ճամփաների հեղ։
Լաբիրինթոս է թվում ինձ մի պահ
Ցանցն այդ խորշերի, թունելների պաղ։
Եվ զարթնում է իմ սրտում մի կասկած՝
Չե՞նք մոլորվի այս խորքերում հանկարծ։
Հապա քարե՞րը անտաշ ու խոշոր,
Որ ինձ են նայում պապիս պես խոժոռ.
Նայում են նրանք ու երկյուղ ազդում,
Կարծես ասում են ինձ տեսքով ազդու.
«Ո՞նց ես հանդգնել, խենթուկ, մտնել հանք,
Իսկ եթե հիմա գլխիդ թրմփա՞նք»։
Բայց ահա քեռիս քայլում է վստահ
Ու ցրում կասկածն իմ սրտում նստած։
Նրան ծանոթ է ամեն անկյունը,
Կարծես մտել է հարազատ տունը,
Գիտի, թե ամեն պղնձի երակ
Որտեղ է պահված, որ ծալքում լեռան։
Ու հպարտ է նա, որ ինքն է հանքի
Խորշերից հանում այդ գանձը անգին։
Եվ ինչպե՞ս է նա աշխատում, փորում,
Ժայռերը նախշում անցքերով խորունկ։
Երբ ձեռքն է առնում հորատման մուրճը՝
Անթիվ կայծեր են պար բռնում շուրջը։
Ինչքան ապառաժ պատը համառի,
Մեկ է՝ իր գործը տեսնում է քեռիս։
Թեև մի օր եմ եղել ես հանքում,
Բայց չեմ մոռանա այդ օրն իմ կյանքում։

*Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՄԲԱՏՅԱՆԻ*




*ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ*

Ցավից բացեցի աչքերս, ինձ թվաց, թե նորից մեղու է: Բայց խայթոցի փոխարեն ոտքիս վրա եղունգի հետքեր տեսա: Նայեցի քույրիկիս մահճակալին: Մելանիկը ոտքով-գլխով մտել էր վերմակի տակ: Ես, իհարկե, անմիջապես կռահեցի, որ դա նրա գործն է: Ծարկացած վեր կացա, բայց ինձ զսպեցի: Երեկ տատիկիս խոսք տվեցի այսուհետև այդ նվնվանի ձայնը չհանել:

Մելանիկը անհամբեր սպասում էր իմ հարձակմանը, բայց ես չէի մոտենում: Նա զգուշորեն գլուխը դուրս հանեց վերմակի տակից և նայեց ինձ: Ես լուռ ցույց տվի իմ բռունցքը: Նա լեզու հանեց, հետո էլ բութ մատը քթին դնելով, սկսեց մատները տփրուբերել: Ես բարկացած վեր թռա, նա գլուխը նորից թաքցրեց վերմակի տակ, մոռացության տալով տատիկիս տված խոստումը, ձեռքս վերմակի տակ տարա, բռնելով շեկլիկ մազերից, մի փոքր ձգեցի: Երանի թե ձգած չլինեի: Այդ նվնվանը մի այնպիսի սարսափելի ճիչ արձակեց, որ ոտքերս դողացին: Ես չէի կասկածում, որ նորից կպատժվեմ, բայց այս անգամ ուրիշ կերպ ստացվեց: Տատիկս խնդրեց հայրիկիս.

— Առաքել ջան, որդիս, սրանք ինձ վառեցին: Հիմա անծանոթներն էլ հարգում են իրար, օգնում միմյանց, իսկ սրանք, զարմանալի բան է, թե ուշադրություն չդարձնեմ, իրար միս կուտեն: Վաչիկին տար հետդ, թող աղջկաս տանը, երեկոյան ես կգամ ու կբերեմ:

— Չեմ կարող, ուշ է,— առարկեց հայրս:

Բայց մի քիչ մտածելուց հետո դարձավ ինձ և ասաց.

— Հագնվիր գնանք, դե, միայն թե շուտ:

Հայրիկիս մեքենան բոլորովին նոր էր. մեկ ժամում հասանք Լուսավան քաղաքը: Այնտեղ մեքենան բեռնաթափեցին և մենք բռնեցինք վերադարձի ճանապարհը:

Սևան տանող ասֆալտապատ խճուղին լայն էր, եզրերին՝ ծառեր ու ծաղիկներ: Խցիկում շոգ էր:

— Կուզեի՞ր ծաղիկներ հավաքել,— թաշկինակով ճակատիս քրտինքը սրբելով, ասաց հայրս:

— Մելանիկի համար, թե չէ իմ ինչի՞ն է պետք ծաղիկը:

— Դա քո գործն է, ում համար ուզում ես՝ հավաքիր, տամ րոպե քեզ ժամանակ,— մեքենան արգելակելով, ասաց հայրս:



# ՏԱՐԻՆՈՍԸ ՀԻՎԱՆԴԱՑԱՎ

ՎԱՍԻԼԻ ՖԵՏԻՍՈՎ

Հասկանո՞ւմ եք, տարինոսս,
Տարինոսս հիվանդացավ։
Նա չկերավ,
Նա չխմեց,
Առավոտյան երգ չըերգեց։
Հասկանո՞ւմ եք, տարինոսս,
Տարինոսս հիվանդացավ։



Ես նստում եմ նստարանին,
Լուռ նայում եմ ես քարտեզին
Եվ շարունակ աչքիս առաջ
Տեսնում եմ իմ տարինոսին.
Ճամփաների երկայնքով նա
Թռչկոտում է, կտցահարում
Որպես սիսեռ՝
Քաղաքները մոտ ու հեռու,
Եվ իջնում է գետի վրա՝
Ջուր խմելու...

Գրատախտակի մոտ են կանչում։
Ինձ մի ծանր ցավ է տանջում։
Ի՞նչ դասեր են անցել այսօր.
Բան չգիտեմ։
«Մեկ» են դնում։

Նկ. ՅՈՒ. ԼԵԲԵԴԵՎԻ

Նստում եմ լուռ...
Կուլ եմ տալիս արցունքներս
Ու հառաչում։
Հավաքվում է ջոկատը մեր։
Իմ մասին են խոսում, դատում,
Մեկը մեկից ավելի խիստ
Դատապարտում...

Ես ասում եմ.
— Ախր, տղերք,
Տարինոսս հիվանդացավ...
Նա չկերավ,
Նա չխմեց,
Առավոտյան երգ չըերգեց...
Հասկանո՞ւմ եք,
Տարինոսս հիվանդացավ...

Կանգնում եմ լուռ
Եվ աչքերս
Հատակին եմ հառում տխուր։
Ներս է մտնում ուսուցիչը,
Նայում է ինձ
Եվ նայում է տղաներին։
Իսկ ջոկատը աղաղակում,
Շառաչում է և աղմկում.



**Շապիկի առաջին էջում՝ Մուրիլիոյի «Շնիկով տղան»**
**(կտավը տպագրվում է Էրմիտաժի 200-ամյակի առթիվ)**



— Մեր Վովկայի տարիենոսը
Շատ հիվանդ է առավոտից։
— Նա չի կերել...
— Նա չի խմել...
— Նա չի երգել առավոտյան...
— Հասկանո՞ւմ եք,
Տարիենոսը հիվանդ է շատ։
— Հա՛,— ուսուցիչն այսպես ասաց։
Այստեղ վախից սիրտս դողաց։
— Ոչի՜նչ, ոչի՜նչ...
Բաց թողածի
Տեղը հետո դու կհանես...
Էլ իզուր լաց ու կոծ չանես։
Մենք կգտնենք մի լավ բժիշկ։
Ցավալի է,
Որ հիվանդ է տարիենոսը...

*Թարգմ. Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*

# ՊԱՏՐԱՍՏ ԵՂԵՔ, ՁԵՐԴ ԲԱՐՁՐՈՒԹՅՈՒՆ

*ԼԵՎ ԿԱՍԻԼ*

(Հատված վիպակից)

Այս վիպակի հերոսներն ապրում են ամենասովորական մի ճամբարում։ Հեռավոր Ջայգադանգ երկրից այստեղ հանգստանալու է գալիս արքայազն Դելիխարը։ Նրա հետ տեղի են ունենում բազմաթիվ զվարճալի ու տխուր պատմություններ։

Վիպակն ամբողջովին տպագրվել է «Կոստյոր» ամսագրի 10. 11. 12-րդ համարներում։

## ԳԼՈՒԽ VI

## ԹԵ ԻՆՉ ԿԱՏԱՐՎԵՑ, ԵՐԲ ՈՏՔ ԴՐԵՑԻՆ ԱՐՔԱՅԱԶՆԻ ՍՏՎԵՐԻ ՎՐԱ

Դա տեղի ունեցավ ճամբարի ֆիզկուլտ-հրապարակում։ Սկզբում այնտեղ վոլեյբոլ էին խաղում։ Դատավորը ֆիզղեկ Կատյան էր՝ Եկատերինա Վասիլևնան։ Արքայազնը ընկերների հետ միասին շվացնում ու ծափ էր տալիս։ Նա տղաների կողմն էր, որոնք ինչքան էլ աշխատում էին հաղթել աղջիկներին, բայց դա նրանց չէր հաջողվում։ Տղաներն արդեն դժվարանում էին բռնել այն գնդակները, որոնք թռչում էին Տոնիգայի ուժեղ ձեռքերի միջից և ասես մեխվում գետնին։ Մի խոսքով, տղաները պարտվեցին և իրենց մեջ հավել քաջություն գտան ֆիզկուլտ-ողջույն բացականչել հաղթողների պատվին։

Այնուհետև Եկատերինա Վասիլևնան գնաց և երեխաներն սկսեցին ցույց տալ իրենց ուժն ու ճարպկությունը, ով ինչի ընդունակ էր։ Դելիխարը գլխի ընկավ, որ այստեղ էլ կարելի է աչքի ընկնել։

Իր ապարանքում, պալատական մի բուռ երեխաների մեջ Դելիխարը գերազանց սպորտսմենի հռչակ ուներ։ Նա կարող էր բոլորից երկար ցատկել, գոտեմարտում հաղթել ամենքին և ներքև գլորել ամենաուժեղ հակառակորդին։

Եվ ահա սկսեցին մրցել թռիչք երկարությունից... Ոչ միայն ճամբարի ամենալավ ցատկորդ Տոնյա Պաշուխինան, այլև Յարոսլավ Նեմեցոնովը, Տարասկա Բոբունովը և մյուսները թռչում-անցնում էին այն նշանից, որը Դելիխարի ուժերի սահմաններում էր, և կրունկներով խրվում էին փխրուն ավազի մեջ։ Այն ժամանակ էլ այդպես եղավ, երբ նա Նեմեցոնովին առաջարկեց ուժերը չափել գոտեմարտի մեջ, տառացիորեն մեկ վայրկյան հետո պարտվեց։

Մի անամոթ կատակաբանը ձայնեց խեղճ ար-

քայազնի հոգում, որին նա համաձայն չէր ու-զում: Տարօրինակ է, ինչու՝ պալատում ինքը հաղթում էր բոլորին, իսկ այստեղ դուրս եկավ անհնազանդության շարքում: Ճիշտ է, նրա վրա ոչ ոք չէր ծիծաղում: Ամենքն էլ զգում էին, որ դա շատ բնական է: Ճամբարում շատ երե-խաներ կամ սպորտսմեններ էին, և այստեղ ոչ մի փառ բան չկար, եթե արքայազնը ընդուներ իր անզորությունը:

Ամառային արևն արդեն սուզվում էր ծովը: Ծովի ափը զանգազորեն վազող ալիքները ներկված էին խիտ կերպով գծագրվող կա-պույտ ստվերներով: Ավազի վրա և ֆիզկուլտու-հրապարակի գազոններում ձգվել էին իրիկնա-յին երկար ստվերները: Արքայազնի ոտքերի տակից ձգվող բարակ ու երկար ստվերը լայ-նակի կտրել էր ավազի այն շերտը, ուր քիչ առաջ մրցում էին թռիչք երկարությունից: Տոնյան, որ այդ պահին ուզում էր հեռա-նալ հրապարակից, ոտք դրեց արքայազնի ստվերի վրա: Դելիխարն անմիջապես ձգվեց կանգնած տեղում: Ավազի վրա նրա ստվերն ավելի երկարեց: Հանկարծ նա մառը թափ-ավեց Տոնյայի վրա և հրամայողական տոնով ասաց.

— Մի՛ համարձակվիր կանգնել այնտեղ, ուր իմ ստվերն է:

Զարմանքից բոլորը լռեցին՝ սկզբում ոչինչ չհասկանալով: Տոնյան վեր բարձրացրեց իր ուղիղ ուսերը և մի կողմ քաշվեց:

— Այդպես է օրենքը. այսինքն՝ չկանգնել այնտեղ, ուր թագավորի ստվերն է, այսինքն՝ արքայազնի,— շարունակեց Դելիխարը:

Եվ այդ պահին Տարասկան չարաճճիության համար դիտմամբ ցատկեց արքայազնի երկար ստվերի վրա և դեռ սկսեց պարել, կրունկնե-րով շաղ տալով ավազը: Արքայազնը վայրկե-նապես հայտնվեց Տարասկայի կողքին և մի ապտակ հասցրեց նրան:

Վրդովմունքից մի պահ բոլորը քարացան: Բայց Տոնյան արդեն շուռ էր եկել և գալիս էր դեպի հրապարակը: Նա անխոս մոտեցավ արքայազնին, բռնեց նրա օձիքից և մինչև նա կսթափվեր, Տոնյան երեք անգամ ուժգին շրխկացրեց այն տեղին, որը թագավորազն-ների մոտ նախատեսված է գահին նստելու համար:

Դելիխարը դուրս պոկվեց աղջկա ձեռքերից: Նրա թուխ դեմքը, որ միշտ աչքի էր ընկնում իր թարմությամբ, դարձավ մուգ-դորշագույն: Հոնքերը ջղաձգորեն վեր-վեր էին թռչում, ար-տասուքը լցվում էր աչքերը:

— Շարախտնգա՛,— գոռաց նա՝ գլխի վերև-վում թափահարելով սեղմած բռունցքները: Դա երևի ջունգլիական մի ահավոր անեծք էր:— Օձի զավակ, դու դոդոշի հոգի ունես: Եվ, այսինքն, կհամոզեմ եղբորս, այսինքն, թա-գավորին, և նա պատերազմ կհայտարարի ձեզ, կկրակի, կսպանի: Կատաղությունից նա պոկ-վեց տեղից և անհայտացավ ծառուղիների մեջ:

Բոլորը շփոթված կանգնել էին: Ինչ էլ որ լինի՝ տհաճ բան կատարվեց: Այնուամենայնիվ՝ նա գաղութային երկրից եկած հյուր է և դեռ արքայազն: Եվ առ քեզ, հենց առաջին օրերին...

Տարասկան ցած իջեցրեց երեսի մոտ պահած ձեռքը.

— Դու իզուր խփեցիր, Անտոնիդա: Դա ար-դեն անվայել էր քեզ:

— Իսկ նա անվայել չպահե՞ց իրեն: Ազա-տությունն է տալիս ձեռքերին,— չէր մեղմա-նում Անտոնիդան:

— Եվ դու նույնպես,— Տարասկային ընդ-հատեց Յարոսլավը,— ինչու՝ ցատկեցիր նրա ստվերի վրա, եթե նրանց մոտ դա չի կարելի:

— Հասարակածում նրանց համար շատ լավ է,— արդարանում էր Տարասկան,— արևն ուղիղ ընկնում է գագաթին, այնտեղ ստվեր կա՞, որ մարդու ոտքի տակ ընկնի...

Հարկ եղավ պատահածի մասին տեղեկացնել ջոկատավար Յուրային: Սա շատ վրդովվեց և լուրջ անհանգստացավ: Առանց ժամանակ կորց-նելու գնաց արքայազնին փնտրելու: Արդեն սկսել էր նկատելիորեն մթնել, երբ Յուրան գտավ Դելիխարին: Սա նստել էր ծովափին գտնվող գործարանի խցիկներից մեկում, որտեղ մարդիկ շորերն են փոխում: Եվ անհրաժեշտ էր երկար համոզել, որպեսզի նա թողներ իր թաքստոցը: Ընթրիքին արքայազնը չեկավ: Ջոկատավար Յուրան նրա համար ուտելիք տարավ ննջարան: Տղաների և Տոնյայի տրա-մադրությունը դեռ ընկած էր: Ամենքն էլ հա-մարում էին, որ լավ բան չստացվեց: Այդպես չէ՞, որ պետք է վերաբերվել արքայա-զուններին:

Ընթրելուց հետո Դելիխարը մեկնվեց մահ-ճակալին, բայց Յուրան ստիպեց նրան վեր կենալ:

Նախ բաց արա անկողինը, ինչպես որ ես



Նկ. Վ. ԿՈՒՓՐԵՅԱՆԻ

րեզ սովորեցրել եմ,— ասաց Յուրան։— Ուրեմն լսիր. ասում են, որ դու ուզում ես սպորտսմեն դառնալ, բայց գիմնաստիկան կարգուկանոնը սովորել չես ուզում։ Սպան ինքը պետք պատրաստի իր անկողինը։ Ո՞վ ես պետք, եթե քեզ համար անկողինն չես կարող գցել, իսկ առավոտները՝ հավաքել։ Այսօր առավոտյան դուրս էիր եկել, առանց մահճակալդ կարգի բերելու։ Դա ոչ մի բանի նման չէ։ Հիմա ես քեզ կսովորեցնեմ, դե նայի՛ր։

— Իսկ ըմբշամարտությո՞ւն կսովորեցնե՞ս։

— Ամեն ինչ իր հերթին։ Ըմբշամարտություն էլ կսովորեցնեմ։ Ես այնպիսի ձևեր գիտեմ, որ ոչ ոք քեզ չի դիմանա։

Նրանք հավաքեցին անկողինը. և Արքայազնը, որ դեռ հեծկլտում էր, հարցրեց.

— Իսկ ինչո՞ւ բոլորն ինձ, այսինքն, հաղթում են։ Ես առաջ բոլորին, այսինքն, հաղթում էի, իսկ հիմա... Գուցե ձեր երկրում, այսինքն, այնպես չէ, ինչպես մեզ մոտ. գետինը ձգո՞ւմ է։

— Այստեղ ձգողականությունը գործ չունի, բարեկամ։ Մի վշտանա, ես քեզ կասեմ ճշմարտությունը։ Պարզապես ձեզ մոտ պալատում բոլորը ծառայում էին քեզ։ Չէ՞ որ դու արքայազն ես, դրա համար էլ նրանք իրենց հարկադրել են քեզանից բիչ թույլ, իսկ ըմբշամարտի ժամանակ էլ անմիջապես ներքև են ընկել։ Ահա և քեզ ձգողականություն. հասկացա՞ր։

Արքայազնը հեկեկալով գլխով արեց։ Որոշ ժամանակ նա լուռ փռում էր սավանը, ուղղում բարձը։ Հետո կամաց ասաց.

— Իմ տատը... Ես, այսինքն, այսպես էի ասում իմ տատիկին։ Տատս ինձ սովորեցրել է ռուսերեն, այսինքն, շատ լավ... Այնտեղ նույնպես այդպես է լինում, այսինքն, չիգախաղ են անում։

— Միայն ոչ թե չիգախաղ, այլ փիչախաղ,— ասաց Յուրան։— Թե չէ՝ ճիշտ ես ասում։ Նրանք քեզ հետ միշտ այդպես են մրցել, գի-

ջել են։ Մեզ մոտ դու մի լավ կկոփվես, կմարզվես և այն ժամանակ կտեսնես, որ այդպես չի լինի։

Վաղուց արդեն շփոթել էին ճամբարային առօրյայի ավարտանշանը և երեխաները քուն էին մտել ծովի ալիքների իրիկնային նվագի տակ։ Ծովափից գալիս էր միայն կոպիճների լուռ խշշոցը։ Ֆիզղեկ Եկատերինա Վասիլևնան իզուր էր դռան մոտ սպասում ջոկատավար Յուրային, որը խոստացել էր նրա հետ միասին հեծանիվով զբոսնել ծովեզրյա խճուղու երկարությամբ։ Դելիխարն արդեն պառկել էր և, ուր որ է, պետք է քներ, բայց մթան մեջ անվերջ բացում էր աչքերը, փնտրում Յուրայի ձեռքը, ամուր սեղմում և հարցնում.

— Իսկ ես հիմա այսինքն, էլ ինչպե՞ս կարող եմ մնալ այստեղ։

— Շատ հասարակ, — արդեն տասներորդ անգամ համոզում էր նրան Յուրան։ — Պա՛հ, կարծես մեծ բան է՝ ասվեր։ Իսկ այ, երբ կոկորդից ես բռնում, դա վատ է... Վաղը ես կհավաքեմ երեքիդ էլ՝ և՛ Բորուսովին, և՛ Պաշուխինային, և՛ քեզ։ Մեկդ մյուսից ներողություն կխնդրեք, և վերջ ամեն ինչին։ Երեքդ էլ մեղավոր եք, ուրեմն համառել պետք չէ։ Բայց դա, իհարկե, այն ժամանակ, երբ առավոտյան կարգի բերես մահճակալդ։

— Ինչպես կարգի բերեմ ո՞ր...— ասաց արքայազնը, նստեց մահճակալին, սկսեց ուղղել բարձի անկյունները։

— Դե լավ,— ասաց ջոկատավարը. — դա առավոտը կանես, իսկ հիմա ի՞նչ պետք է անել, երբ անկողինը բաց է։

— Քնել։

— Ուրեմն՝ քնիր։

Ֆիզղեկ Եկատերինա Վասիլևնան այնուամենայնիվ սպասեց Յուրային... Երբ նրանք հեծանիվներով, կողք-կողքի, երևացին ամայատապատ ճանապարհի վրա, լուսինը լուսավորում էր դեմից, իսկ երբ վերադառնում էին՝ հեծանիվների առջևից սահում էին նրանց ստվերները, որոնք մերթ մոտենում էին իրար ու մերթ էլ հեռանում...

Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



# ՆԱ ԱՆՀԱՅՏ ՉԿՈՐԱՎ

### Ա. ԿՐԵՍՏԻՆՍԿԻ

1941 թվականի աշնանն էր։ Լենինգրադը շրջապատման մեջ էր, և այնտեղից հազվադեպ էին նամակներ գալիս ուրալյան զինվորական հոսպիտալ։ Եվ այդ նամակները ստանում էր միայն մեկ մարդ՝ կարմիրբանակային Եվգենի Պետրովիչ Ռոժդեստվենսկին։

Դժվար էր պատկերացնել, թե ինչպես էր փոստը գալիս ֆաշիստական բլոկադայի օղակից։ Ինչպես երևում էր, դա հաճախ չէր պատահում, որովհետև Եվգենի Պետրովիչը մերթ ոչ մի նամակ չէր ստանում, մերթ էլ ստանում էր մի ամբողջ կապոց։

Իսկ նա պառկած էր անկողնում՝ ամբողջովին վիրակապով փաթաթված, ծանր կոտրվածքներով, չէր կարողանում նույնիսկ շարժվել և միայն խնդրում էր, որպեսզի բարձրաձայն կարդան իրեն հասցեագրված նամակները։

Թեթև վիրավորված ռազմիկներից մեկնումեկը հանձն էր առնում կարդալ։ Շուտով հիվանդասենյակ սկսեցին գալ այնքան վիրավորներ, որ նույնիսկ նստելու տեղ չէր լինում, իսկ ուշացածները, վզները ձգած, հավաքվում էին դռան մոտ։ Հոսպիտալում շատ լենինգրադցիներ կային, և ամեն մեկն իր հարազատն ուներ այնտեղ, ու ամեն մի նոր լուր անմիջապես իրադարձություն էր դառնում։

Մի անգամ, հերթական ընթերցանության ժամանակ, Եվգենի Պետրովիչի հիվանդասենյակի մոտով անցնում էր հոսպիտալի վարիչը։ Նա կանգ առավ, լսեց և հրամայեց՝ այսուհետև, հենց որ Եվգենի Պետրովիչը նամակ ստանա, նրա մահճակալը տեղափոխել մեծ դահլիճ, հրավիրել այնտեղ բոլոր ցանկացողներին ու նամակներն ընթերցել բեմից։

Ընթերցումների ժամանակ դահլիճը միշտ լեփ-լեցուն

էր լինում: «Այսօր Սովինֆորմբյուրո ենք լսելու», — ասում էին վիրավորները:

Այդպես անվանեցին հոսպիտալում լենինգրադյան դպրոցական Յուրա Ռոժդեստվենսկու նամակները:

... Յուրան գրում էր հորը՝ «Մեզ մոտ վերջին ժամանակներս լռություն է ու ամեն ինչ կարգին»:

Եվ վիրավորները հանգիստ շունչ էին քաշում՝ թող շատ լինեն այդպիսի օրեր: Յուրան գրում էր. «Երբ եղանակը վատ է լինում, ես ու մայրիկը գնում հերթ ենք կանգնում ու կարտոֆիլ ենք ստանում: Լավ եղանակներին գնալ չի կարելի, որովհետև շուտ-շուտ տագնապ է լինում»:

Եվ վիրավորները Լենինգրադին ցանկանում էին վատ եղանակներ:

Յուրան գրում էր. «Մեր տան վրա նետած բոլոր հրկիզվող ռումբերը հանգցրինք: Առայժմ մենք բոլորս տան հետ միասին ողջ ենք»:

Եվ վիրավորներին թվում էր, որ այդ լուրը իրենց տան մասին է:

Լսում էին նաև այլ տեղեկություններ. «Երեկ ցերեկով, ժամը հինգին մոտ, գերմանական մի ինքնաթիռ հասավ քաղաքի կենտրոնին և ֆուգասային ռումբեր նետեց մեր շրջանի վրա: Պայթյուններից փլվեցին մեր տան կողքի մի քանի շենքեր...»

Այդպիսի լուրերից հետո հոսպիտալում սկսվում էին տագնապալի օրեր: Վիրավորները դիմում էին բժիշկներին և խնդրում իրենց դուրս գրել, իսկ անկողնուն գամվածները դառնում էին լռակյաց կամ էլ երեխաների նման՝ քմահաճ:

Հունվարի սկզբներին հոսպիտալն իմացավ Յուրայի նախ՝ մոր, ապա տատի մահվան մասին: Երկուսն էլ սովամահ էին եղել:

Հետո նամակները դադարեցին:

... Հազիվ մի փոքր ապաքինված, հենափայտերի օգնությամբ, մեծ դժվարությամբ տեղից շարժվելով Եվգենի Պետրովիչը մի կերպ հասավ Լենինգրադ: Բայց Յուրան չկար... Հոր գալուց մի քանի օր առաջ նա դուրս էր եկել տնից և չէր վերադարձել:

«Անհայտ կորած», — այդպես է գրված այն ցուցակի մեջ, ուր Յուրան մեկն էր քաղաքի հերոսական պաշտպանության ժամանակ ընկած 649 հազար զոհերից:

Բայց Յուրան անհայտ չկորավ:

*Թարգմ. Ֆ. ՏՈՆՈՅԱՆ*

**Դատարկախոսը գանձ է լրտեսի համար, իսկ դատարկախոսությունը՝ հանցագործություն հայրենիքի հանդեպ: Երբեք, ոչ մի տեղ և ոչ մեկին մի՛ հաղորդիր ռազմական և պետական գաղտնիքը:**

*Բարև, հայրիկ* *5/9 — 41 թ.*

*Արդեն երկար ժամանակ է, ինչ քեզանից ոչ մի լուր չունեմ: Չգիտեմ, ինչով բացատրել: Ամեն օր նայում եմ փոստարկղը, իսկ նա դատարկ է: Երեկ նորից օդային հարձակում էր: Բակ և տների վրա գցեցին ութ հրկիզվող ռումբ, իսկ իններորդի փոխարեն՝ մազութով լի տակառ: Բայց տակառը չպայթեց, իսկ ռումբերը հանգցրինք:*

*Երեկ ընդամենը հինգ տագնապ եղավ՝ երկուսը ցերեկով, իսկ երեքը՝ երեկոյան:*

*Առայժմ ցտեսություն:*
*Քո որդի Յուրիկ:*

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԲԿԼԻԿԸ ԹԱԿԱՐԴՆ ԸՆԿԱՎ

Սպիրիդոն պապիկը առավոտյան շատ վաղ արթնացրեց մեզ:

-- Միասին գնացեք և ստուգեք թակարդները, գուցե մի որևէ բան ընկած լինի:

Իհարկե, ես ու եղբայրս այդ հանձնարարության վրա շատ ուրախացանք, արագ-արագ նախաճաշեցինք և դուրս եկանք: Բոլորովին աննկատելիորեն անցանք ճանապարհը և դուրս եկանք լճի մոտ, որտեղ և դրված էին թակարդները: Հերթով ստուգեցինք բոլոր քողարկված թակարդները, բայց ամեն անգամ մեզ սպասում էր հիասթափությունը: Ամբողջ լիճը շրջանցեցինք՝ ոչ մի բադ:

Ի՞նչ պիտի անեինք, որոշեցինք տուն վերադառնալ: Կարմիր հաղարջ ուտելու հույսով, ուղղակի անտառի միջով գնացինք: Մեկ էլ տեսնենք, մեզանից ոչ հեռու, ճանապարհից դուրս, ինչ-որ բան թփրտում է թփերի մեջ: Երբ մոտեցանք՝ շատ զարմացանք: Պարզվեց, որ անտառաքլորների համար ինչ-որ մեկը դեռ ձմեռը թակարդ է դրել և ահա դրա մեջ մի մեծ բադաքլոր է ընկել: Երևում էր, որ նոր է ընկել: Մենք փորձեցինք զգուշությամբ ազատել անսպասելի գերուն, բայց նա այնպես ուժգնորեն սկսեց ծեծկվել, որ հնարավոր չէր մոտենալ: Սակայն, բադաքլորը շուտով հոգնեց և պառկեց գետնին: Տեսնելով, որ նա ուժասպառ է եղել, ես սկսեցի հանել նրա վզի օղակը: Այդ ժամանակ փոքրիկ եղբայրս կասկածանքով հարցրեց.

— Մի՞թե հնարավոր է բադերին օղակով բռնել:

— Երբեք չեմ լսել, — պատասխանեցի ես:

Տանը իրար հերթ չտալով պատմում էինք մեր տարօրինակ որսի մասին: Պապիկս, որ փորձված որսորդ էր, առանց շտապելու վննեց բադաքլորը և բացատրեց.

— Այս բադաքլորը ուժեղ անձրևի ժամանակ չի կարողացել կեր ճարել և որոշել է կարմիր հաղարջ կտցել: Տեսեք, նրա ամբողջ կտուցը կարմիր է: Եվ ահա բկլիկը ընկել է թակարդը:

Նայեցինք և, իսկապես, բադաքլորի կտուցի մեջ դիքը հաղարջ էր:

ՎԱՆՅԱ ԻՎԱՆՈՎ
Յակուտիա, Վերխնի-Վիլյույսկ

# ԹՌԻՉՔ ԴԵՊԻ ՏԻԵԶԵՐՔ

Այն տարին, երբ Յուրի Ալեքսանդրովիչ Գագարինը թռավ տիեզերք, մենք բոլորս՝ աղջիկ թե տղա, միայն տիեզերք-տիեզերք էինք խաղում: Մենք շատ էինք ուզում նմանվել առաջին տիեզերագնացին: Եվ ահա մի օր էլ որոշեցինք իսկականից թռչել տիեզերք: Նշանակեցինք թռիչքի օրը, բայց բոլորն էլ ուզում էին տիեզերագնաց լինել: Աղջիկներն ասում էին, որ այս անգամ արդեն աղջիկ պիտի թռչի, սակայն տղաները չէին զիջում:

Մեր տիեզերանավը մի փայտյա տակառ էր, որի վրա գրել էինք «Վոստոկ—2»: Տիեզերանավը մենք բարձր տվեցինք մի ոչ մեծ սարալանջի վրա, որից ներքև մի ուրիշ ավելի փոքր սարալանջ կար, իսկ դրանից հետո՝ լճակներ: Վիտկան համարձակ ժպտալով տեղավորվեց «Վոստոկ—2»-ի մեջ: Տղաները սկսեցին վայրկյանները հաշվել, իսկ աղջիկներս դաշտային ծաղկեփնջերը ձեռքներիս՝ վազեցինք դեպի վայրէջքի տեղը:

— Ստա՛րտ,— և տակառը գլորվեց:

Տղաները վազեցին հետևից: Տակառը թռչկոտելով սլացավ մեր կողքով: Մեր հաշվով արդեն պետք է կանգներ, բայց նա դեռ շարունակում էր գլորվել և շուտով անհայտացավ: Բոլորս սլացանք տիեզերանավի անցած ճանապարհով: Երբ մենք մոտեցանք լճակին, կոլտնտեսության հովիվները ջրից հանում էին «Վոստոկ—2»-ը: Նրա միջից դուրս եկավ մի քիչ թրջված Վիտկան:

— Ուռա՛ա՜,— վայրէջք կատարեց, — բղավեցինք բոլորս:

Մենք ծաղկեփնջեր տվեցինք նրան: Վիտկայի ճակատը ու-




ռած էր, իսկ արմունկը կապտած, բայց «Տիեզերագնաց —2»-ը ուրախ ժպտում էր:

ՕԼՅԱ ՍԵՐԳԻԵՆԿՈ

Վորոնեժի մարզ. Ռոսոշանի շրջան.
գյուղ Շելյակովկա

# ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ Է ՀԱՐԿԱՎՈՐ

Մեր ջոկատը իր վրա վերցրեց նախադպրոցական մանկատան շեֆությունը: Մենք այնտեղ գնացինք վաղ առավոտյան, երբ երեխաները հենց նոր էին վեր կացել: Պատուհանից տեսնելով մեզ, նրանք խմբով դուրս վազեցին բակ, իսկույն շրջապատեցին մեզ և սկսեցին կարմացած հայացքներով ուսումնասիրել: Սկզբում թվում էր, թե նրանք վախենում են մեզանից: Սակայն հետո աշխուժացան և սկսեցին քարեր շպրտել մեզ վրա, բղավելով.

«Խփի՛ր աղջիկներին»:

Մենք հաճախ սկսեցինք մանկատուն գալ: Աստիճանաբար երեխաները վարժվեցին և սիրեցին մեզ: Իսկ մի փոքրիկ աղջիկ հարցրեց Օլյա Պերեդելսկայային. «Դու ինձ մայրիկ կլինե՞ս»:

Մեր ջոկատի պիոներները խաղում են փոքրիկների հետ, նրանց համար գրքեր կարդում, իսկ մի քանի օր առաջ համերգ ցույց տվեցին: Աշնանը մեր երեխաները մանկատան բակում տնկեցին պտղատու և սաղարթավոր ծառեր: Գարնանն էլ՝ տնկեցինք և այժմ էլ մեզ վրա ենք վերցրել այդ տնկիների խնամքը:

Երբ մեր դպրոցի ջոկատավարն ասում է, որ ջոկատին հանձնարարած գործերը վատ ենք կատարում, մենք հիշում ենք մեր փոքրիկներին, նրանց ուրախ դեմքերը և մտածում, որ մենք՝ պիոներներս, պետք է լինենք այնտեղ, որտեղ մեր օգնության կարիքն են զգում:

Մոսկվայի մարզ. քաղ. Մխոդնյա.
6ա դասարանի պիոներական ջոկատ

# ՄԵՐ ԳՐԱՎԱՃԱՌՆԵՐԸ

Մեր փողոցում մի գարեջրատուն կար: Հասարակության պահանջով փակեցին այն: Մենք կարգի բերեցինք նախկին գարեջրատունը և մաքրեցինք տարիների կեղտից: «Գարեջուր և ջրեր» ցուցանակի փոխարեն կախեցինք ուրիշը «Պատանի գրասերների գրքի կրպակ»:

Եվ ահա կիրակի է: Առավոտ շատ շուտ, գրքի կապոցներ ձեռքներիս, շտապում ենք: Կրպակում գրքերը դասավորում ենք շնորհքով: Մոտենում են առաջին գնորդները, վերցնում գրքեր, պլակատներ, օրացույցներ, բացիկներ:

Իսկ մի անգամ տեղի ունեցավ անախորժություն: Մեզ է մոտենում մի խիստ կին.

— Դուք ի՞նչ եք վաճառում:

— Գրքեր:

— Վճարեք տեղի համար:

Սկզբում մեզ թվաց, թե նա կատակ է անում, չէ՞ մի, փող է մեզանից պահանջում, կարծես մենք ինչ-որ առևտրականներ ենք: Լավ էր, որ մարդիկ մեզ պաշտպանեցին և տիրաբար խոսող այդ կնոջը բացատրեցին, թե ով ենք մենք:

Ամեն կիրակի մենք գիրք ենք վաճառում պիոներական կրպակում:

— Բարի գալուստ,—ասում ենք մենք կոլտնտեսականներին:

ՎԱԼՅԱ ՏՈԼՄԱՉԵՎ

Կիրովյան մարզ. քաղ. Սանչուր

*Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ*



# ՀԱՑԸ

ՎԼԱԴԻՄԻՐ ԼԻՖՇԻՑ

Փոքրիկ տղան
Անցորդների աչքի առաջ
Հաց էր ուտում մուրաբայով:
Եվ ես պիտի հանդիմանեմ
Այդ տղային
Իմ այս երգի ամեն բառով:

Համարյա մի ակնթարթում,
Չխնդրելով՝ օգնեն իրեն,
Լեզվով սրբեց նա մուրաբան,
Հա՛ցը, հա՛ցը շպրտեց դեն:

Նրա կողքից
Քայլում էր մի ուրիշ տղա
Նայեց հացին,
Արագ վազեց հացի վրա,
Ուրախ, առա՛նց տատանվելու,
Խփեց ոտքով
Եվ թռցրեց հացը հեռու:

Եվ անցնում են երկու տղա,
Գրքերով լի
Պայուսակներն առած՝ անցնում:
Եվ քանի դեռ
Ես գրույց եմ բացել հիմա,
Սպասեցե՛ք, ո՛վ տղաներ,
Սպասեցե՛ք դուք մի քիչ դեռ,
Մի՛ գնացեք այդպես արագ,
Կանգնեցե՛ք դուք
Ժողովրդի աչքի առաջ...

Մի՞թե, մի՞թե դուք չեք լսում
Տրակտորի ձայնը զվարթ,
Մի՞թե, մի՞թե դուք չեք տեսնում,
Թե ինչպես է բրիգադը
Առավոտյան դուրս գալիս դաշտ:

Մի՞թե, մի՞թե չեք տեսնում դուք
Ծարավ, հոգնած տրակտորիստին,
Որ շոգում է, տոկում, խոկում
Ու շունչ տալիս դաշտ ու արտին:



Դուք կանգնեցե՛ք, դուք նայեցե՛ք
Ծով արտերի կանաչ բոցին,
Սովորեցրեք ականջը ձեր
Դուք հասկերի խշխշոցին:

Դուք չե՞ք տեսնում աղջիկներին,
Որ խռնացած շոգերի մեջ,
Կալսիչի մոտ, միջօրեին
Աշխատում են, տքնում անվերջ:

Դուք չե՞ք լսում
Կանչն ու թնդյունն աշխատանքի,
Դուք չե՞ք տեսնում
Կաթիլները պարզ քրտինքի:

Իսկ կռի՞վը,
Դուք չե՞ք լսում ձայնը նրա...
Շա՜տ տարիներ առաջ էր դա:
Պաշարված էր
Լենինգրադը բոլորովին,
Նա շառաչում,
Ծանր շնչում
Եվ զարկում էր ֆաշիստներին:
Ծուխ էր ու բոց, ցուրտ էր ու սով
Սովյալների հառաչանքներ
Եվ այսպիսի պատառ հացով
Մի մարդ մահից կփրկվեր...
Ահա ինչ է պատառն հացի:
Խոնարհվեցե՛ք նրա առաջ:
Նա չի միայն հացը հարգում
Ով որ հոգով կույր է ու խուլ
Ով չունի խիղճ, ազնվություն:

*Թարգմ. Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*
*Նկ. Վ. ԼԵՎԻՏԱՆ*



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՍ ԴԱՐՁԱ ՄԱՔՍԱՆԵՆԳ-ՆԵՐԻ ՊԱՐԱԳԼՈՒԽ

(Փինն ջոկատավարի պատմածը)



Մ. ՕԼԿՈՆԵՆ

Նկ. Ն. ԿՈՒՍՏՈՎԻ

Ահա, թե ինչ դեպք պատահեց ինձ հետ անցյալ տարվա աշնանը։

Ես ուղեկցում էի ամառային արձակուրդներն անցկացնելու նպատակով սովետական պիոներների մոտ հյուրընկալվող ֆինն աղջիկներին ու տղաներին։

Ապրում էինք Զելենոգորսկի մոտ՝ «Արշալույս» ճամբարում։ Ճամբարում շատ հետաքրքիր բաներ կային, սակայն, ինչ խոսք, նրանցից ամենահետաքրքիրը կենդանի անկյունն էր, որտեղ առավոտից մինչև գիշեր ծվծվալով, խոխոալով, կչկչալով ու ծիկրակելով քարշ էին գալիս տեսակ-տեսակ կենդանի էակներ և այդ բոլորի մեջ՝ նաև երկու փոքրիկ կրիա։ Նրանց խնամում էին երկու տղա՝ Պեկկեն ու Պավլուշան։ Ամառվա ընթացքում նրանք այնքան կապվեցին իրենց «ընթաշեփերի» հետ, որ բաժանվելու մասին մտածել անգամ չէին ուզում։ Այդ մասին իմացավ ճամբարի պետ Մարիա Սերգեևնան։ Ֆինլանդիա մեկնելուց մի քանի օր առաջ, նա տողանի ժամանակ հայտարարեց, որ Պեկկեն և Պավլուշան կենդանի անկյունում լավ աշխատելու համար պարգևատրվում են կրիաներով։ Իհարկե, մնացած երեխաներն էլ ցանկացան կրիա ունենալ։ Եվ ահա բարի Մարիա Սերգեևնան մեկնեց Լենինգրադ և մեր՝ Ֆինլանդիա մեկնելու նախօրյակին ճամբար ժամանեց արկղով բեռնավորված մի մեքենա, որի մեջ վխտում էին մոտ յոթանասուն կրիա։

Երեսունհինգ ֆինն պիոներներից ամեն մեկը երկուական կենդանի կրիա նվեր ստացավ։

Օ՜, ինչ ցնծություն էր դա։

Մեկնելու հապճեպ պատրաստությունների մեջ երեխաները վազում էին խանութներն ու կրպակները, ստվարաթղթե տուփեր ճարում, «օդի համար» անցքեր բացում, խոտից կամ դարմանից անկողիններ պատրաստում, փնտրում սալաթ կամ գազար...

Առավոտ շուտ մենք արդեն կայարանում սպասում էինք Հելսինկի գնացող գնացքին։ Ամեն մի ճամպրուկում խլվլում էին կենդանի նվերները...

Սակայն, երբ մենք տեղավորվեցինք վագոններում ու գնացքը շարժվեց, չգիտեմ ինչու, կրիաները տաք արեցին։ Հավանաբար օրորվելուց քունները տարավ ու քնեցին։ Եթե իմանային, թե ինչ է սպասում իրենց առաջիկայում, հավանաբար չէին քնի այդքան հանգիստ։

Վայնիկկալա սահմանային կայարանում վագոն մտան ֆինն մաքսավորները։ Ես նրանց անմիջապես հայտնեցի, որ երեխաները տուն են վերադառնում սովետական պիոներական ճամբարից, և մաքսավորները չնայեցին նույնիսկ երեխաների ունեցած-չունեցածին։ Նրանք փորձով գիտեին, որ ոչ մի «մաքսային» ապրանք այստեղ լինել չի կարող, որ երեխաները Սովետական Միությունից տանում են միայն հուշանվերներ, քաղցրավենիք...

Մաքսավորների պետը, տարիքոտ, բարեհոգի մի մարդ, խոսեց երեխաների հետ, հրաժեշտ տվեց և ուզեց հեռանալ։ Այդ պահին մեր աղջիկներից մեկն ասաց.

— Քեռի, թե իմանաք ինչպիսի կրիա ունե՜մ...

Պաշտոնյան կանգ առավ։

— Կրիա՞, կենդանի՞։

— Դե, իհա՛րկե, կենդանի։

— Հապա մի ցո՛ւյց տուր...

— Ահա՛, տեսեք, գիտե՞ք, թե անունը ինչ եմ դրել... Զուրկա։

Մաքսավորը չնայեց Զուրկային, այլ դիմեց մնացած երեխաներին.

— Գուցե էլի՞ որևէ մեկն ունի կրիա։

— Ես ունեմ, ես ունեմ, ես էլ ունեմ,— վրա տվեցին երեխաները և սկսեցին իրենց կրիաները հանել ու ցույց տալ մաքսավորների պետին։

Եվ այստեղ պատահեց այն, ինչի նրանք բոլորովին չէին սպասում։

— Կրիաներին պետք է բռնեմ,— ասաց սահմանապահը,— դուք նրանց փոխադրման իրավունք չունեք։ Այլ պետություններից ֆինլանդական ռեսպուբլիկա ընկնող ամեն մի կենդանի պետք է հատուկ անասնաբուժական ստուգման ենթարկվի...



— Ուրեմն, սա մաքսային ապրա՞նք է,— հարցրի ես։

— Այո, սա էլ իր տեսակի մաքսային ապրանք է։

— Ձեր կարծիքով ես էլ՝ մաքսանենգների պարագլո՞ւխը։

— Այո, բայց մենք ձեզ չենք ձերբակալի, քանի որ ձեր օգնականներն իրենք խոստովանեցին իրենց հանցանքը։

Այո, կատակը՝ կատակ, բայց մենք մեկնումի խառնաշփոթության մեջ իսկապես չէինք մտածել այն մասին, որ մեր սողացող բարեկամների համար նույնպես արտասահման մեկնելու թույլտվություն է հարկավոր...

Եվ ահա՛ մեր սիրելի կրիաներին, բոլորին առանց բացառության, ցուցակագրեցին, դրին մի մեծ տոպրակի մեջ ու դուրս տարան վագոնից։

Ինչ խոսք, որ երեխաների տրամադրությունն ընկավ, բայց մաքսավորն ասաց.

— Գլուխները մի՛ կախեք, եթե կրիաներն առողջ դուրս գան, դուք նրանց Հելսինկիում ետ կստանաք։

Եվ նա գրեց երեխաների անունները ու հասցեները։ Իմ հասցեն նույնպես գրեց։

Հելսինկիի կայարանում երեխաներին դիմավորում էին նրանց ծնողները, և ես հրաժեշտ տվեցի իմ փոքրիկ բարեկամներին։

Մի երեք օր հետո ուշ երեկոյան տուն եմ վերադառնում, բանալիով բացում դուռը և լսում, թե ինչպես երկար մութ միջանցքում ինչ-որ բան է խշխշում ու եղունգներով քերում։ «Գուցե մկներ են բույն դրել մեզ մոտ», անցավ մտքովս։ Վառում եմ լույսը, և ինչ տեսնեմ. հինգ կրիա սողում են դեպի դուռը։

Արդեն ուշ էր, և ես չէի կարող որևէ տեղ գնալ։ Պառկեցի քնելու։

Երբեք չեմ մոռանա կրիաների ընկերակցությամբ անցկացրած այդ սարսափելի գիշերը։ Ամեն մի քանի րոպեից հետո նրանք ինձ արթնացնում էին։ Երբ ինքնամոռացման մեջ ես նորից ննջում էի, երազիս մեջ հսկա կրիաներ ու կոկորդիլոսներ էի տեսնում։

Առավոտյան ամեն ինչ պարզվեց։ Իրենց գործը թեթևացնելու համար, մաքսավորները կրիաներին չէին տարել հասցեներով, այլ բոլոր յոթանասուն «գլուխն» էլ բերել էին ինձ մոտ։ Իհարկե դա ավելի դյուրին էր։ Իմ բացակայության ժամանակ բակապանը բացել էր դուռը և մաքսատան պաշտոնյաները կրիաներով լի արկղը սենյակ էին բերել։

Ցանկություն չունեի ևս մի գիշեր անցկացնելու սողունների ընկերակցությամբ։ Հենց նույն օրը զանգ տվի մեր խմբից երկու տղաների, տաքսի վարձեցինք և մեկ ու կես ժամ քաղաքում շրջագայելով՝ կրիաներին հանձնեցինք իրենց տերերին։

Չգիտեմ՝ ինչպես էին իրենց զգում կրիաները, բայց տղաներն ու աղջիկները շատ ուրախ էին։ Ճիշտն ասած, ես նույնպես ուրախ էի...

Ռուսերենից թարգմ. ՀԱՍՄԻԿ ԳՈՒԼՅԱՆ



# ԿԱՐՈՂ Է ՊԱՏԱՀԵԼ



ԷՎԳԵՆԻ ՌԵՅՆ

Նկ. Գ. ԿՈՎԼԵՆԶՈՒԿԻ

## ԺԱՄ՝ ՀԵՂԻՆԱԿԻ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ: ԹԶ ԱՅՆՔԱՆ ԼՈՒՐՋ ՍԿԻԶԲ:

Ես վերադարձա գիտա-հետազոտական ինստիտուտից: Մեր ամբողջ ընտանիքը չէր ճաշել և ինձ էր սպասում: Այդպես է կարգը մեր համերաշխ ընտանիքում: Կերանք սունկից պատրաստված ապուրը, և ես սկսեցի պատմել: Դեռ երկար կհիշեմ, թե ինչ դուրս եկավ այդ պատմությունից:

— Ո՛չ, ո՛չ: Ամեն ինչ հնարավոր է, բայց դա՝ երբեք,— ծիծաղեց մորաքույրս:

— Փո՜ղ փչելդ,— ասաց փոքր եղբայրս:

Հայրս գլխի ընկավ.

— Նա մեզ պարզապես խաղացնում է:

Տատիկս, որ անցյալում կինոդերասանուհի է եղել, ասաց, որ նույնիսկ կոմբինացված նկարահանումների ժամանակ այդպիսի բան չի տեսել:

Եվ միայն մայրս, որ շատ խաղաղ և հարգալից կին է, հանգիստ ձայնով ասում էր.

— Մի ինքդ մտածիր, որդիս, չէ՞ որ այդպիսի բան չի կարող պատահել:

Ես այլևս չհամբերեցի և տեղիցս վրդովված վեր թռա.

— Հասկացե՛ք վերջապես, այդ բոլորը ճիշտ է, այդ բոլորը կարող է պատահել:



## ԴԺՈՒՅԱԿԻՑԸ ԱՊՐՈՒՄ Է ՕՎԿԻԱՆՈՍՈՒՄ:



Ինչի՞ համար է այդքան աղմուկը:

Դելֆինների համար: Ի՞նչ դելֆիններ: Նրանք, որ լողում են ծովում: Նրանց մասին հանրագիտարանում գրված է՝ «Ատամնավոր կետերի ենթակարգին պատկանող կաթնասուն կենդանիներ»:

Երկու տարի է անցել արդեն այն ժամանակից, երբ գիտնականները դելֆինների մասին տարօրինակ բաներ իմացան: Դա այսպես սկսվեց. գիտնականները բացեցին դելֆինների գանգը, նայեցին ուղեղը և զարմացան. իր կառուցվածքով նա մարդկային ուղեղին այնքա՜ն նման էր:

Եվ այստեղ շատ բան հիշեցին. օրինակ՝ ձկնորսների մեջ տարածված այնպիսի լեգենդներ, որոնց մեջ ասվում է, թե դելֆինը փրկում է խեղդվող տղային և մի ամբողջ ամիս իր մեջքին նստեցրած ման է տալիս նրան, թե դելֆինները օգնում են իրենց վիրավոր ընկերներին, բուժում, խնամում նրանց... Բայց չէ՞ որ դրանք հնարված բաներ են, հեքիաթներ: Գուցե և բոլորովին էլ հեքիաթներ չեն:

Գիտնականներն աշխատում են, հետազոտում և լռում: Իսկ երբ նրանցից ձեռք չեն քաշում, ասում են կարող է պատահել:

Ծովայինները Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ, դեռևս չկատարելագործված սարքերի օգնությամբ, ունկնդրելով ջրի խորքերի ձայները՝ համոզված տագնապ էին բարձրացնում.

— Ջրասույզ նավեր, լսում եմ, ջրասույզ նավեր:

Բայց հաճախ ոչ մի ջրասույզ նավ էլ չէր հայտնաբերվում: Ձայները, որոնք վախեցրել էին ծովայիններին, արձակում էին... դելֆինները: Եվ դրանք ինչ-որ անմիտ ճիչեր և գռգռոցներ չէին: Դա լուրջ և ճիշտ հաղորդում էր: Եթե, օրինակի համար, դելֆինների երամը ընկնում էր ցանցի մեջ և նրանցից մեկը գտնում էր որևէ պատռված տեղ, ապա իսկույն այդ մասին հաղորդում էր ամբողջ երամին: Շուտով բոլոր դելֆինները մեկը մյուսին հետևելով՝ դուրս էին գալիս այդ անցքից:

Մի անգամ Անտարկտիդայում ահա թե ինչ պատահեց: Ձկնորսական նավի անձնակազմը որսի էր դուրս եկել: Բայց կոսատկաները (դելֆինների մի տեսակ) ձկնորսների գործը փչացրին: Նրանք պատռոտեցին ցանցը, և բռնված ամբողջ ձուկը վերադարձավ օվկիանոս: Ձկնորսներն օգնության կանչեցին կետորսական նավերին: Կետորսները հայտնվեցին հարպունի թնդանոթներով և սկսեցին կրակել:

Այդ դեպքից հետո դելֆինները անսխալ կերպով տարբերում էին կետորսական նավերը ձկնորսական նավերից: Եվ արդեն կետորսական նավերին մոտ չէին գալիս: Իսկ գերված դելֆինները ինչքա՜ն շուտ են սովորում ամենադժվար խաղերը՝ ջրագնդակը, կեգլին և այլն: Եվ ինչքա՜ն լավ են նրանք կողմնորոշվում օվկիանոսում: Ով գիտե, թե ինչպիսի՜ գաղտնիքներ ունեն





նրանք և, կարող է պատահել, երբևիցե դրանց մասին կպատմեն հենց իրենք:



Բանն այն է, որ դելֆինները, բացի իրենց լեզվից, կարող են խոսել անգլերեն, ռուսերեն, ճապոներեն, նայած ինչ լեզու են սովորեցնում նրանց: Եվ նրանք բառերը ոչ թե կրկնում են հենց այնպես, ինչպես թութակները, այլ արտասանում են մտածված կերպով:

Ամերիկյան հայտնի գիտնական Ջոն Լիլլին վկայում է, որ ավազանում էլեկտրական մարտկոց տեղադրելուց հետո, դելֆինները հրապուրվում էին իրենց համար հաճելի էլեկտրական լիցքերով, էլեկտրականության տակ ընկնող դելֆինները մահանում էին: Գիտնականները ավազանի ծայրին բարձրաձայն քննարկում էին իրենց հետազոտությունները: Եվ ահա, երբ մագնիտոֆոնը սկսեց վերարտադրել դելֆինների ստորջրյա խոսակցությունները, դելֆինների լեզվի հետ միասին լըսվեցին նաև անգլերեն բառեր: Դրանք հիշեցնում էին անգլերեն «Ջգույշ, թակարդ է» բառերին:

Գիտնականները մինչև այժմ վիճում են, թե իրո՞ք դա այդպես է: Իր հոդվածներից մեկում Ջոն Լիլլին գրում է. «Ես բացարձակապես համոզված եմ, որ 20 տարի հետո մարդիկ կարող են խոսել ուրիշ կենդանիների հետ... Ես գրազ կգամ, որ այդ կենդանիները կլինեն դելֆինները»:

Քսան տարին այնքան էլ մեծ ժամանակաշրջան չէ: Կսպասենք՝ կտեսնենք: Բայց կարևորը դա չէ:

Իսկ ի՞նչն է: Այդ մասին՝ հաջորդ գլխում:

## ԲԻՈՆԸ ԿՅԱՆՔԻ ԲՋԻՋՆ Է

Ահա թե ես ինչ եմ մտածում. քսան տարի հետո մենք կխոսենք դելֆինների հետ, թե ոչ՝ դեռ հայտնի չէ: Բայց այն, որ արդեն այսօր մենք դելֆիններից կարող ենք շատ օգտակար բաներ սովորել՝ դա պարզ է: Վերցնենք դելֆինների մաշկը. դրա մասին գիտնականները գրքեր են գրում: Դելֆինը ջրում շարժվում է ժամում 45 կմ. միջին արագությամբ: Դա հսկայական արագություն է: Իր մկանների օգնությամբ այդպիսի արագություն առաջացնելու համար դելֆինը պետք է ունենա 7 անգամ ավելի շատ մկան, քան ունի իրականում: Բայց այնուամենայնիվ նա լողում է մեծ արագությամբ: Ինչո՞ւմն է բանը:

Պարզվում է, որ դելֆինների մաշկի վերին շերտը շատ հաստ է՝ 30—40 անգամ ավելի, քան մյուս բոլոր կենդանիներինը: Մաշկի այդ շերտը չափազանց առաձգական է և իր առաձգականությամբ չի զիջում ամենալավ ռետինե իրին: Բացի դրանից, այդ շերտը ներքին շերտի հետ ահա թե ինչպես է կապված: Ներքին շերտն ունի ելուստ, որը մտնում է վերին շերտի բջջի մեջ: Դրանից դելֆինի մաշկը էլ ավելի առաձգական է դառնում: Եվ երբ դելֆինը շարժվում է, ջուրը նրան ավելի




քիչ է դիմադրում, …ն, ասենք, նավին: Հարկավոր է պատրաստել նման արհեստական մաշկ և նավը պատել նրանով:

Ի դեպ, առաջին փորձերն արդեն արվել են: Դրանք ցույց են տվել, որ սինթետիկ մաշկը 2 անգամ մեծացնում է արագությունը:

Մի՞թե միայն դելֆինները կարող են լինել մեր ուսուցիչները: Իսկ ձկները, թռչունները, չղջիկները, բզեզները, գորտերը, սարդերը:

Եվ ահա երևան եկավ մի նոր գիտություն: Ըստ տրադիցիայի նրան տվեցին հին հունական անուն՝ բիոնիկա: Բիոն նշանակում է կյանքի բջիջ: Ինժեներ Շտեյնհաուզը բիոնիկայի խնդիրների մասին գրել է. «Բիոնիկան ուսումնասիրում է կյանքը, որպեսզի հասկանալի լինի, թե ժամանակակից տեխնիկայի համեմատությամբ բնության մեջ ինչն է ավելի կատարյալ ու խելացի»:

Բիոնիկայի բնագավառում բիոլոգը և ինժեները աշխատակցում են իրար հետ, օգնում մեկը մյուսին:

Ինչպե՞ս են տեսնում ձկները պղտոր ջրում: Ինչպե՞ս են կողմնորոշվում թռչունները թռիչքի ժամանակ: Վրա հասնող վտանգի՝ փոթորիկի, հրդեհի և նույնիսկ երկրաշարժի մասին կենդանիներին նրանց ո՞ր օրգանն է նախազգուշացնում:



# ՍԵՆՅԱԿ, ՈՐ ԼԻՔՆ Է ԲԶԵԶՆԵՐՈՎ ԵՎ ԻՆՔՆԱԹԻՌՆԵՐՈՎ

Երբ առաջին անգամ ընկնում ես այդ սենյակը, չես իմանում որտեղ նայես: Վազում ես մի պատից մյուսը, նետվում դեպի սեղանը, սեղանից հատակը, դարակները: Հետաքրքիր շատ բաներ են ցուցադրված պատերին, սեղանին, դարակների մեջ, ․․․ց ամենահետաքրքիրը ինքը սենյակի տերն է: Սենյակը պատկանում է հայտնի ավիակոնստրուկտոր, հայրենական ինքնաթիռաշինության խոշորագույն պատմագետ, բզեզների կոլեկցիայի աշխարհում ամենամեծ տիրակալ Վադիմ Բորիսովիչ Շավրովին: Ամենուրեք բզեզներ են: Պատերին ամրացված հատուկ արկղներում քիչ մասն է միայն ցուցադրված: Ամբողջը հնարավոր չէ ցուցադրել: Չէ՞ որ նրա կոլեկցիայում կա ավելի քան՝ 20 հազար տեսակ բզեզ:

Աշխարհի բոլոր գույները շողշողում են այդ սենյակի պատերին:

Այստեղ կան կատվի մեծություն ունեցող՝ հսկա և բրնձի հատիկի չափ փոքրիկ բզեզներ: Վայրի բզեզներ, որոնց բեղիկները հիշեցնում են տրանզիստորային ընդունիչի անտենաներ, իսկ ծնոտները՝ դարբնոցային աքցան: Ահա և բոլորիս ծանոթ մայիսյան բզեզը, որին կարելի է հանդիպել յուրաքանչյուր քաղաքի խաչմերուկում: Այստեղ կան ջունգլիներում, անապատներում և լեռնային կիրճերում ապրող բզեզներ: Յուրաքանչյուր բզեզ ունի իր պիտակը, որի վրա գրված է լատիներեն անունը և տեղեկություններ՝ երբ և որտեղից է բռնված:

Շավրովի կոլեկցիան մեծ հետաքրքրություն է ներկայացնում գիտնական էնտոմոլոգների համար (գիտական լեզվով այդպես է կոչվում միջատներ ուսումնասիրող գիտնականը):

Վադիմ Բորիսովիչը իր կոլեկցիաները ցուցադրում է նաև ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կողմից հրատարակված գրքերում:

Բայց հարկավոր է նկատել մի կարևոր հանգամանք. Շավրովը ավիակոնստրուկտոր է, նա համարյա բոլոր սովետական հիդրոպլանների հեղինակն է: Ամբողջ կյանքի ընթացքում նա անբաժան է եղել բզեզներից և ինքնաթիռներից:

Ահա Շավրովի թռչող նավերից մեկի նկարը, որը նման է հսկա բզեզի: Ով է իմանում, թե ինչպիսի՞ մտքեր է տվել Շավրով-էնտոմոլոգը Շավրով-կոնստրուկտորին:

...Արդեն ուշ է, իսկ ես ոչ մի կերպ չեմ



կարողանում դուրս գալ Վադիմ Բորիսովիչի մոտից: Սեղանի վրա հայտնվում են բզեզներով լի նոր արկղիկներ, ինքնաթիռների նկարներ, գրքեր: Խոսակցությունը փոխվում է նոր գիտության՝ բիոնիկայի շուրջը:

Շավրովը ասում է.

— Հավատացեք իմ փորձերին, մենք դեռ շատ բան կսովորենք բզեզներից: Բեղիկները՝ ահա թե ինչի վրա պետք է առաջին հերթին ուշադրություն դարձնել: Ինձ թվում է, որ հատկապես դրանք են ուղղություն տալիս բզեզին թռչելիս: Դրանք նրա անտենաներն են: Ի դեպ, առաջինը գիտնականներն էին, որ անտենաներ անվանեցին բզեզների բեղիկները: Եվ միայն հետո այդ բառը անցավ ռադիոտեխնիկայի մեջ:

— Հետաքրքիր է,— պատասխանում եմ ես, - չէ՞ որ դա էլ բիոնիկա է: Տեխնիկները բիոլոգներից տերմին են փոխ առնում:

— Այո, բիոնիկա, բիոնիկա,— ասում է Շավրովը,— չափազանց հետաքրքիր գիտություն է:

Ինձ թվում է, որ Շավրովը մի քիչ տխուր է: Չէ՞ որ նա արդեն թոշակառու է, իսկ բիոնիկան երիտասարդների գիտություն է:













# ԶՐՈՒՅՑՆԵՐ, ԻՆՉՊԵՍ ՁՈՒԿԸ



Հաջորդ օրը ես եղա ծկնաբանական բիոնիկայի լաբորատորիայում: Այնտեղ կային մինչև առաստաղը հասնող գծագրեր, աղյուսակներ, նկարներ և պահարաններ: Եվ ո՛չ մի ակվարիում, ո՛չ մի կենդանի ձկնիկ: Ես փոքր-ինչ հիասթափված էի:

— Ի՞նչ եք ասում, ակվարիումներ մեզ հարկավոր չեն,— բացատրեցին ինձ,—մեր ակվարիումները գետերն ու լճերն են, ծովերն ու օվկիանոսները: Մենք հետազոտություններ ենք կատարում բնական պայմաններում, հաճախ՝ սովորական, երբեմն էլ հատուկ ձկնորսական նավերում:

— Իսկ ինչե՞ր կան այս պահարաններում,— հետաքրքրվեցի ես,— չորացած ձկնե՞ր:

— Նայեցեք ինքներդ:

Ես բաց արեցի առաջին իսկ պատահած պահարանի դուռը: Եվ ի՞նչ: Դարակների վրա կային միայն կոճեր:

— Դրանք ձկների համերգներն են,— ասաց լաբորատորիայի աշխատակիցներից մեկը՝ ակնոցավոր մի երիտասարդ,— ուզո՞ւմ եք լսել:

Նա ընտրեց մի քանի կոճ, ամրացրեց մագնիտոֆոնին և սեղմեց կոճակը:

Որոտալից մի բամբ ձայն հայտարարեց. «Սևծովյան ավազանի ձկների ձայնը».

— Ուկ, ուկ, ուկ, բրամմմմ,— լսվեց մագնիտոֆոնից:

Ծովախեցգետնի ցասման ճիչը».

— Բուր, բուր, դա, դա, դա:

«Երկայնաձկան արձակած ցավի ճիչը».

— Ույ, ույ-այ, պոմ, պոմ:

«Սևծովյան խեցգետնի արձակած ճիչը հարձակման ժամանակ».

— Իխ, փուխ, ռռռռռ, ախ:

Եվ հանկարծ նորից ալեկոծության աղմուկ, որին հաջորդեց ձկների ձայնը:

Ես մատնացույց արեցի մյուս պահարանները: Ակնոցավոր երիտասարդը հասկացավ իմ միտքը:

— Այո, մյուս պահարաններում էլ կան ձկնային համերգների ձայնագրություններ,— ասաց նա և բացատրեց.— Ձկները «խոսում են» մարդկային լսողության համար ձայնային ցածր հաճախականությամբ, դրա համար էլ մենք առաջ այն չէինք լսում: Բայց այժմ հատուկ սարքավորումների օգնությամբ մենք կարող ենք ոչ միայն լսել ձկնային «խոսակցություն», այլև «կռուցել» նրանց հետ: Մենք կստեղծենք սարքեր, որոնք ըստ մեր ցանկության կարձակեն ձկների լեզվին համապատասխան ձայներ: Եվ ով է իմանում, ինչպիսի գաղտնիքներ դեռ կհայտնաբերենք ձկների աշխարհում, հարկավոր է միայն լավ լսել, թե ինչի մասին են նրանք շատախոսում ծովերի ու օվկիանոսների խորքերում:

# ԻՆՉ Է ԱՐՎՈՒՄ ԴՊՐՈՑԻ ՄՅՈՒՍ ԴԱՍԱՐԱՆՆԵՐՈՒՄ




Եվ այսպես, ուսումնական տարին սկըսված է: Մեր դպրոցն ամբողջ մոլորակն է: Օվկիանոսում բնակվող ձկներն ու կենդանիները, անապատի օձերը մեր ուսուցիչներն են, անտառային թավուտների գաղանները՝ դաստիարակները, օդում թռչող թռչունները՝ մանկավարժները, իսկ մեղուներն ու չղջիկները՝ պարզապես պրոֆեսորներ և ակադեմիկներ:

Ահա թե առաջիկայում բիոնիկան ինչ հարցեր է պարզաբանելու.

1. Ինչպե՞ս է հետախույզ-մեղուն փեթակում եղած իր ընկերներին հայտնում մեղրատու բույսերի տեղը:

2. Ինչպե՞ս է կառուցված չղջիկի ձայնորսիչը, որի օգնությամբ նա որս է կատարում:

3. Ո՞ր ապարատն է ապահովում ձկների երամի բացարձակ միաժամանակյա գործունեությունը:

4. Ինչպե՞ս է շնաձուկը իմանում իրենից մի քանի կմ. հեռավորության վրա տեղի ունեցող բոլոր պայթյունների, վթարների, աղետների մասին:

5. Ինչպե՞ս են կողմնորոշվում թռչունները թռիչքի ժամանակ:

6. Եվ, վերջապես, իրո՞ք դելֆինը այնպես խելացի և հասկացող կենդանի է, ինչպես կարծում է Ջոն Լիլլին:

Այսպիսի հարցեր այսօր արդեն բիոնիկայում շատ կան և օրեցօր ավելանում են: Եվ նրանց իմաստը մեկ է. արդյո՞ք բնության մեջ պատրաստի վիճակում չկա այն, ինչ մեզ հարկավոր է և մենք այդ մասին չգիտենք: Արդյո՞ք մի որևէ թռչունի կամ միջատի մոտ չի կարելի գտնել այն, ինչի վրա այսօր մենք գլուխ ենք ջարդում:

Եվ բիոնիկան մտահոգված է դրանով:

# ԵՂՋԵՐՈՒՆ՝ ԶԳԵՍՏԱՊԱՀԱՐԱՆ: ՈՉ ԱՅՆՔԱՆ ԼՈՒՐՋ ՎԵՐՋ:



Եվ այսպես, բիոնիկան մտածում է: Իսկ դա նշանակում է, որ կգա օրն ու ժամը և յուրաքանչյուր հանելուկ կստանա իր լուծումը:

Երբևէ գուցե մեծ շրջադարձ կատարվի բնության նկատմամբ մարդու ունեցած վերաբերմունքի մեջ:

Մարդը ոչ միայն ուզում է սանձել բնությունը, այլև հասկանալ: Եվ դա կօգնի նրան՝ կյանքը դարձնելու ավելի լավ ու կատարյալ:

Կարող է պատահել, որ իրոք 20 տարի հետո մենք կզրուցենք դելֆինների հետ: Չղջիկները մեզ կհաղորդեն եղանակի տեսությունը: Հպարտ արծիվները ամռանը կմարզեն պիոներներին, իսկ ծերության հասած եղջերուները կգնան դպրոցները, կաշխատեն այնտեղ որպես հանդերձապահներ: Եվ դուք ձեր գլխարկները կըկախեք ուղղակի նրանց ճյուղավորված եղջյուրներից:

Դա, իհարկե, կատակ է: Իսկ ինչպե՞ս չկատակել, երբ մեր առջև բացվում են այդպիսի գրավիչ, կարմանալի ու հաճելի հեռանկարներ:

*Թարգմ. Ժ. ԱԹԱՆԵՍՅԱՆ*

Տրվում է անվճար՝ «Պիոներ» ամսագրի 12-րդ համարի հետ:



# ԵՐԵՎԱՆՅԱՆ ԶԱՐԹՈՒՑԻՉՆԵՐԸ

Ամեն տեղ երեխաներ կան, իսկ որտեղ որ նրանք կան, կան նաև զարթուցիչներ: Չէ՞ որ երեխաները սիրում են խորը քնել և քնով տարված՝ մոռանալ օրվա ռեժիմը: «Իսկ մեծերին ի՞նչ է, պետք չե՞ն զարթուցիչները», իրավացիորեն կհարցնեք դուք: Իհարկե, նրանց էլ շատ են պետք ժամանակին ազդարարող մետաղե աքաղաղները:

Ահա՛ թե ինչու են երկրով մեկ շրջում Երևանի զարթուցիչները և հարմար կերպով թառում ամենուր՝ բնակարաններում, նավերի ու գնացքների խցիկներում, հերթափոխության սենյակներում:

Սակայն միայն մեր երկրում չէ, որ սրտաբաց ընդունում են այդ մետաղե աքաղաղներին: Երևանի զարթուցիչները լավ համբավ ունեն Լեհաստանում, Բուլղարիայում, Արևմտյան Գերմանիայում, Անգլիայում, Վիետնամում, Եգիպտոսում և այլուր:

Ահա այս նկարում դուք տեսնում եք երևանյան զարթուցիչներով բեռնված «Իրբիտլես» ջերմանավը Լենինգրադ նավահանգստում՝ Համբուրգ մեկնելուց առաջ:

Մ. ՓԻԼՃՋԻԿՅԱՆ

Ես հորթուկի պես վազվզում էի ծաղիկների մեջ, չգիտեի որը քաղեմ. բոլորն էլ իրենց քնքուշ թերթիկներով ինձ էին նայում: Ես դեռ մի փոքր փունջ էի հավաքել, երբ հայրս տագնապալից ձայն տվեց.

— Վաշի՛կ, վազի՛ր, շու՛տ:

Ես վախեցած շտապեցի մեքենայի մոտ: Հայրս բռնեց թևիցս, համարյա նետեց խցիկի մեջ և նստեց ղեկին: Մեքենան հոնդյունով պոկվեց տեղից: Ես խցիկի մեջ մեկ այս, մեկ այն կողմն էի գլորվում: Հայրս մեքենան վարում էր անասելի արագությամբ: Ի՞նչ էր պատահել, ոչինչ չէի հասկանում: Երբ աչքս ընկավ արագության արագաչափին, մնացի զարմացած. փոքրիկ տատանվող սլաքը մեխվել էր 120-ի վրա:

Ես ուզում էի մի բան իմանալ, բայց վախենում էի խոսել: Հորս ճակատից կաթում էր քրտինքը: Նա ուզում էր հասնել մեր առջևից գնացող ավտոբուսին: Ահա քիչ էլ, և մենք կհավասարվենք նրան: Ավտոբուսի մեջ իրարանցում է. ի՞նչ է պատահել... Մեր մեքենան համարյա ընթանում էր ավտոբուսի հետ կողք-կողքի:

— Հարցրու՝ ի՞նչ է պատահել,— առանց ինձ նայելու ասաց հայրս:

— Ի՞նչ է պատահել,— պատուհանից գլուխս հանելով՝ բղավեցի ես:

Երկու մեքենաների հռնդյունի միջից հազիվ լսեցի «արգելակներս» բառը և փոխանցեցի հայրիկիս:

— Այդպես էլ կռահում էի,— գազն ավելացնելով ինքն իրեն ասաց հայրս: Ինձ թվում էր, թե ոչ թե գետնի վրա ենք, այլ թռչում. ենք օդով: Եվ, իսկապես, թե մեր մեքենան թևեր ունենար, մենք անպայման օդ բարձրացած կլինեինք:

Դիմացից եկող մեքենաների վարորդները մեզ բռունցք ցույց տալով, իրենց մեքենաները մի կողմ էին քաշում: Մի վարորդ չէր ուզում ճանապարհը մեզ զիջել և քիչ էր մնում, ընդհարվեր մեր մեքենայի հետ: Բայց հայրս մի ճարպիկ շարժումով սրընթաց նետի պես անցավ նրա կողքով:

Մեր մեքենան, առանց արագությունը կորցնելու, սլանում էր ավտոբուսի առջևից: Հայրս մի պահ ոտքը գազից վերցնելով, նայեց հայելուն: Ավտոբուսը վայրկյան առ վայրկյան մոտենում էր մեր մեքենային: «Հիմա, ուր որ է, մեզ ոտնատակ կանի»,— մտածում էի ես, երբ հայրս բղավեց.

— Բռնատեղից ամու՛ր բռնիր,— և ձեռքը խցիկից հանելով՝ ինչ-որ նշան արեց:

Լսվեց ուժգին շրմփոց, ես վախեցած ետ նայեցի. ավտոբուսը կպել էր մեր մեքենային:

— Հայրի՛կ,— գոռացի ես:

Բայց հայրս ինձ չարձագանքեց: Միայն ոտքը արգելակից վերցնելով, դրեց գազալծակին: Վերջապես, հայրս սթափվեց:

Թափքի հետևի տախտակամածը ջարդվել ու ճռճռվում էր: Ափսոս, չէ՞ որ մեր մեքենան բոլորովին նոր էր: Ես դեռ մտքով շոյում էի հորս մեքենան, լսվեց երկրորդ շրմփոցը: Բայց այս անգամ առաջինի համեմատ թույլ էր: Մեր մեքենայի արագությունն ակնթարթում ավելի բարձրացավ: Ավտոբուսը հպվել էր մեր մեքենայի ետևի թափքին և ամբողջ ուժով հրում էր մեզ: Բայց այն երկար չտևեց: Շուտով արագություն ցույց տվող սլաքը տատանվելով սկսեց ետ նահանջել: Որոշ ժամանակից հետո մեր մեքենան բոլորովին կանգ առավ: Կանգնած էր նաև ավտոբուսը:




Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Հայրս ձեռքերով սրբեց ճակատի քրտինքն ու բաց արեց խցիկի դռնակը: Ես նրան հիշեցրի, որ գրպանում թաշկինակ ունի... Իմ աչքի առջև բացվեց հետևյալ տեսարանը:

Երկու վարորդներ փարվեցին իրար: Վրա հասան նաև ուղևորները: Նրանք բոլորն էլ այլայլված լալիս էին, փարվում հայրիկիս...

Ես ոչինչ չհասկանալով, ապշած նայում էի այդ արարողությանը: Հանկարծ ականջ ծակող մի ճիչ լսեցի: Դա շատ նման էր իմ նվնվան քույրիկի ձայնին: Ես աչքերս դարձրի ձայնի կողմը: Դա մի երկու տարեկանի չափ սևաչյա աղջիկ էր: Արդյո՞ք նա էլ էր վախից ճչում: Ոչ: Նա տեսել էր իմ ձեռքի ծաղկեփունջը և ուզում էր: Ես ծաղկեփունջը տվեցի նրան:



ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Երազիս մեջ ձյուն էր եկել,
Շատ էր եկել, ամպի չափ,
Ու ձյան միջից, տեսնեմ մեկ էլ
Դուրս եկավ մի Ձմեռ պապ։

Եկավ կանգնեց քուրքը հագին,
Թավ հոնքերին փաթիլներ,
Գավազանն էլ մի ահագին
Գերան ասես թե լիներ։

Ճերմա՜կ-ճերմա՜կ մորուքն երկար
Իջնում, հասնում էր գոտուն,
Քիթը կարմիր՝ ասես ներկած,
Աչքերը՝ մեղմ ու ժպտուն։



Նա դեռ հեռվից ինձ ճանաչեց,
Ասաց. «Գալո՛, մոտ արի,
Գիտեմ, որ էլ դու ծույլիկ չես,
«Երկուս» չունես այս տարի։

Դրա համար նայիր թե ի՜նչ
Լավ բաներ եմ քեզ բերել,
Այնքան անուշ չիր ու չամիչ,
Որ դու երբեք չե՜ս կերել։

Դե չիրն ի՞նչ է, չամիչը ի՜նչ,
Տես՝ չմուշկներ արծաթե,
Կուզես վերցրու, սահիր մի քիչ,
Ցանկանում ես դու եթե»։

Ի՞նչ ասեի, դե դուք գիտեք,
Որ սահել չեմ իմանում,
Բայց պապիկը, արի ու տես,
Որ ինձ աչքով էր անում

Ու ասում էր. «Ձես փոշմանի,
Փորձիր, գուցե կսահես,
Եվ իմացիր, ով սիրտ անի,
Նա կսուրա ծտի պես»։

Չմուշկները մի կերպ հագա
Ու երբ շուրջս նայեցի,
Դեմս բացվեց մի սահադաշտ՝
Հայելու պես հարթ ու ջինջ։

Շուրջը հսկա ծառեր կային,
Լույսեր կային գունավո՜ռ,
Մի տնակ կար հեքիաթային
Ու մի կախարդ պառավ կար։

Պառավն եկավ ու ժպտալով
Ձեռը դրեց իմ ուսին.
«Մի՛ վախեցիր,— ասաց,— Գա՛լո՛,
Կուզե՞ս սղղանք միասին»։

Ու սղղացինք... Գիտե՞ք՝ իրոք,
Այնպես էի ես սահում,
Որ ձյունախառ քամին էր լոկ
Ականջներիս մեջ խաղում։

Այստեղ հանկարծ մտքովս անցավ,
Որ չգիտեմ ես սահել,
Հետո հազիվ կարողացա
Ոտքի վրա ինձ պահել։

Եվ անպայման դուրս կգայի
Սահադաշտից՝ վիրավոր,
Եթե հանկարծ չարթնանայի
Ես այդ քնից ծանր ու խոր։

Իսկ երբ հետո պատմեցի այս
Երազը՝ իմ տատին ծեր,
Տատս ասաց. «Ոչ թե երազ,
Այլ՝ հեքիաթ ես դու տեսել»։

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՎԵՐԵՎԱԿԸ

ՀԱՆՐԻ ԶԱՐՑԱՆ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Ես ու իմ ընկեր Գագոն ուզում էինք հեծանիվ քշել։ Բայց հեծանիվ չունեինք. մեր սարքած ինքնասայլակն էլ չար մարդիկ ջարդեցին։

Մի օր դասերից հետո Գագոն ասաց.

— Արի վերելակ նստենք։

— Իսկ ի՞նչ բան է վերելակը,— հարցրեցի նրան։

— Բան է, է՛լի. նստենք՝ կտեսնես,— ասաց նա, ու գնացինք դեպի հարևան շենքը։

Քիչ անց, ներս մտանք շքամուտքից, մոտեցանք վերելակին։ Գագոն բաց արեց ցանցապատ դռնակը, մենք մտանք փոքրիկ խցիկը, որտեղ չորս հոգի ազատ կարող էին տեղավորվել։ Աջ կողմի պատի վրա էլ կոճակներ կային։ Գագոն սեղմեց ամենավերևի կոճակը, և սկզբում՝ «դը՜ռռ», հետո՝ «ճը՜ռռ ճը՜ռռ, ճը՜ռռ», սկսեցինք վերև բարձրանալ ու «Թըրը՛խկ», կանգ առանք։ Հետո Գագոն սեղմեց մի ուրիշ կոճակ, և հիմա էլ՝ «դը՜ռռ», ներքև սուրացինք։ Այսինքն դա սուրալ չէր։ Այդ վերելակ կոչեցյալը միայն վեր ու վար էր անում, այն էլ բավականին դանդաղ, բայց թե դա էլ հաճելի էր, մանավանդ կանգնելիս և շարժվելիս՝ փորներս կարծես խուտուտ էր գալիս։ Կարգին հաճույք էր...

Հետո նորից.

— «Դը՜ռռ»,— ներքև։

— «Ճը՜ռռ»,— վերև։

— Ամո՜ւր փակեք դուռը,— ներքևից ձայն տվեց մի քեռի։

Վախեցանք։ Ամեն բան խառնեցինք իրար։ Սկսեցինք բոլոր կոճակները սեղմել, դուռը բացել-փակել, բայց վերելակն այլևս տեղից չէր շարժվում. երևի փչացել էր։ Իսկ քեռին նորից գոռաց.

— Այդ ո՞վ է այդտեղ խաղում վերելակի հետ...

Թողեցինք վերելակն ու վախից պատերին քըսվելով՝ սկսեցինք ցած իջնել։ Քեռին ներքևում սպասում էր մեզ։ Դա մի նիհար ու բարձրահասակ քեռի էր, ձեռքին էլ մեքենայի անիվ կար։

— Այդ դո՞ւք էիք խաղում վերելակի հետ, տղաներ,— հարցրեց նա։

— Ինչպե՞ս... Ո՞վ...— կմկմացինք մենք։

Քեռին մրթմրթաց, ահագին ծանր անիվը գցեց ուսն ու վերելակ սարքողին հայհոյելով սկսեց բարձրանալ աստիճաններով։ Հետո կանգ առավ հանկարծ, շրջվեց դեպի մեզ ու ասաց.

— Հասկանո՞ւմ եք, տղաներ, անպետք վերելակ է, շարունակ փչանում է, մի՛ խաղացեք հետը,— ժպտաց մեզ ու բարձրացավ։

Մենք էլ ժպտացինք, որովհետև այդպիսի բարի քեռի չէինք տեսել...

Իսկ մյուս օրն արդեն մոռացել էինք այդ քեռու ասածները և դասերից հետո նորից վեր ու վար




էինք անում վերելակով։ Բայց վերելակը նորից փչացավ, ու հենց այդ պահին էլ լսեցինք երեկվա այն նույն ձայնը.

— Ամո՛ւր փակեք դուռը։

Ինչ արինք-չարինք՝ ոչինչ դուրս չեկավ. վերելակը տեղից չէր շարժվում։ Ա՛յ քեզ խայտառակությո՜ւն։ Հիմա ի՞նչ պատասխան պիտի տայինք քեռուն. չէ՞ որ նա մեզ երեկ խնդրել էր՝ չխաղալ վերելակի հետ։

Բայց ի՞նչ անեինք. սկսեցինք իջնել աստիճաններով։

Քեռին այս անգամ ուներ երկու անիվ ու բարկացած տեսք։

— Ո՞ւր էիք խաղում վերելակի հետ,— հարցրեց նա՝ անիվները գետին դնելով։

Դագոն փախավ։ Նա միշտ այդպես է, հենց որ նեղն է ընկնում, թողնում է ինձ ու փախչում։ Ճիշտն ասած, ես էլ էի ուզում փախչել, որովհետև քեռու տեսքը շատ էր ահարկու, բայց մի տեսակ անպաշտպան էր։ Ախր, չէ՞ որ նա երեկ այնքա՜ն բարեկամաբար խնդրեց մեզ... Ես չկարողացա փախչել, այլ նորից կանգնեցի.

— Բայց...

— Էլ ի՞նչ «բայց»,— բղավեց քեռին։

Չգիտեի ինչ պատասխանել։ Իսկ քեռին բղավում էր, որ՝ այդպես չի կարելի, որ՝ առանց այն էլ վերելակ սարքողն անշնորհքի մեկն է, որ՝ չէ՞ որ ինքը խնդրեց մեզ...

— Էլ չենք անի, ազնիվ խոսք,— ասացի ես։

Բայց քեռին երևի լրիվ կորցրել էր հավատը մեր նկատմամբ.

— Էլ չեմ հավատում ձեզ... Իսկ ես էլ կարծում էի կարգին տղաների հետ գործ ունեմ... Մի՞թե ուրիշ խաղալիք չունեք... Հեծանիվ քշեք, կամ որևէ նման բան... Ախր առանց այն էլ անպետք վերելակ է...

Ես ուզում էի ասել, որ հեծանիվ չունենք, իսկ մեր ինքնաթիռն էլ ջարդել ենք, բայց մեկ էլ քեռին այնպես ապտակեց ինձ, որ ամեն բան մթնեց աչքերիս առաջ...

Հետո նա անիվները դրեց վերելակի մեջ, շրխկացրեց դուռը, և վերելակն սկսեց բարձրանալ, իսկ նա դեռ գոռում էր ցանցի միջից, ինչպես մի վանդակը գցած վագր.

— Չէ՛, որ ես խնդրեցի ձեզ...

Միակ բանը, որ ինձ մնում էր անել, այդ լաց լինելն էր, և սկսեցի հեծկլտալ։ Անիծյա՜լ վերելակ։ Միշտ, միշտ էլ Դագոյի պատճառով ես եմ տուժել։ Ես հեծկլտում էի։

* * *

Անցան օրեր։ Բայց ոչ մի կերպ չէի մոռանում քեռու վերջին խոսքերը. «Չէ՞ որ ես խնդրեցի ձեզ»... Իսկ Դագոն շարունակ մեղադրում էր ինձ, թե ինչու չփախա։ Նա այդպես է, միշտ փախչում է։

Մի օր էլ դպրոցում վիճեցինք Դագոյի հետ, ու մենակ տուն էի գալիս։ Փողոցում տեսա այն քեռուն. մեքենայի անիվն էր փչում։ Մեքենան էլ «Մոսկվիչ» էր, կանաչ գույնի «Մոսկվիչ»։ Ուզեցի խույս տալ, անցնել նրա կողքից, բայց նա նկատեց ինձ ու ասաց.

— Կօգնե՞ս ինձ։

Ուրախացա, որ ինձ չճանաչեց ու մոտեցա իսկույն.

— Իսկ ի՞նչ պետք է անեմ։

Նա ցույց տվեց իրենից քիչ հեռու ընկած փոքրիկ փայլուն զսպանակավոր փակիչն ու գլխիկը.

— Դիր իրար մեջ ու տուր ինձ։

Ես անմիջապես կատարեցի նրա խնդրանքը։ Նա բութ մատն արագ հեռացրեց անիվի անցքից, գըլխիկով պտտեց փակիչը հետո սկսեց անիվը հագցնել իր տեղը։

— Իսկ ուրիշ գործ չկա՞ անելու,— ասացի ես։

Նա ժպտաց.

— Եթե շատ ես ուզում գործ անել, վերցրու շորը նստարանի վրայից և փայլեցրու մեքենան։

Ես կատարեցի նաև նրա երկրորդ խնդրանքը։ Մաքրում էի նրա մեքենան ու մտածում. ինչ լավ է, որ ինձ չի ճանաչում։

Հետո, երբ նա ձգեց անիվի բոլոր պնդօղակները, ասաց.



— Չպտտվե՞նք մի փոքր։

— Եթե ժամանակ ունեք...

— Նստիր,— ասաց նա։

Նստեցինք. ես՝ հետևում, իսկ նա՝ ղեկին։ Շարժի գցեց իր «Մոսկվիչը», և սկսեցինք սուրալ քաղաքի փողոցներով։ Ա՜յ թե որն էր իսկական սուրալը... Խաչմերուկներից մեկում միլիցիոներ էր կանգնած, որովհետև ճանապարհ ցույց տվող ավտո-

մար չէր վառվում։ Միլիցիոները խոսքի էր բռնվել մի քաղաքացու հետ և ճանապարհ չէր տալիս մեզ։ Քեռին գլուխը դուրս հանեց ու դիմեց միլիցիոներին.

— Կարո՞ղ ենք շարժվել։

Միլիցիոներն իսկույն ճանապարհ տվեց մեզ, անցանք խաչմերուկը։ Քեռին շուռ եկավ դեպի ինձ ու ասաց.

— Հասկանո՞ւմ ես, պոստի վրա կանգնած հեքիաթ է պատմում...

Ես գլխով արի։ Եվ մտածում էի. ինչ լավ է, ի՜նչ լավ է, որ ինձ չի ճանաչում...

Հետո նա ասաց.

— Իսկ մենք դեռ չենք ծանոթացել իրար հետ։ Ես քեռի Հայկն եմ։

— Իսկ ես՝ Ռուբիկը,— ասացի ես։

— Լավ անուն է,— ոգևորվեց նա։— Դու ինձ դուր ես գալիս. բարեկամներ կլինենք։

— Այո,— ասացի ես։

Նա մի տեսակ դառը քմծիծաղ տվեց և հանկարծ արգելակեց մեքենան։ Հասել էինք տան մոտ։

— Դե, Ռուբիկ, իսկ ինչպե՞ս ես սովորում։



— Հինգ հատ «4» ունեմ, մնացած բոլորը «5» է,— ասացի ես։

Քեռի Հայկը հարցրեց.

— Իսկ դու ո՞րերորդ դասարանն ես փոխվել։

— Երրորդ,— ասացի։

— Ընդամենը քանի՞ առարկա եք անցնում։

— Վեց առարկա։

— Ուրեմն ընդամենը մի հատ «5» ունես,— ծիծաղեց նա։

Ես հառաչեցի։

— Իսկ ի՞նչ ես անում այդ մի «հինգը». չե՞ս կարող դա էլ «չորսի» վերածել,— ասաց նա։

Ես հասկացա. քեռի Հայկը պարզապես ուզում էր, որ «չորսերս» դառնան «հինգեր»։ Եվ չպատասխանեցի, այլ նորից հառաչեցի։ Իսկ նա խրախուսաբար զարկեց ուսիս.

— Վաղն էլ կզբոսնենք մեքենայով։

— Իսկ սա ո՞ւմ մեքենան է,— հարցրեցի նրան։

— Մերն է,— ժպտաց նա։

— Ես ու Գագոն էլ, երբ մեծանանք, կարող է մենք էլ ավտո ունենանք,— ասացի ես։

— Ո՞վ է Գագոն,— հարցրեց քեռի Հայկը։

— Ընկերս է,— ասացի։

— Ո՞ր ընկերդ. նա, որ փախա՞վ այն օրը,— ծիծաղեց քեռի Հայկը։

Պատկերացնո՞ւմ եք։ Ա՛յ թե ինչպիսի՜ն էր քեռի Հայկը։ Իսկ ես կարծում էի, թե նա ինձ չի հիշում... Եվ ասացի.

— Այո։

Քեռի Հայկը հանկարծ լրջացավ, շոյեց մազերս ու ասաց.

— Ուզում ես Գագոյին էլ բեր։ Իսկ այն օրվա համար, Ռուբիկ ջան, ես էի մեղավորը, դու և մի քիչ էլ՝ վերելակը...

Ես գլխով արեցի ու վազեցի տուն։

* * *

Տրամուայի մոտ հանդիպեցի Գագոյին. ինձ էր սպասում։ Նա միշտ այդպես է. կռիվ է գցում, փախչում, հետո զղջում է ու ժամերով սպասում ինձ։

— Ուզո՞ւմ ես վաղը գնանք վերելակ նստենք,— ասաց նա։

— Չեմ ուզում,— ասացի ես։

— Ինչո՞ւ,— զարմացավ նա։

— Որովհետև վաղը ուրիշ բանով ենք զբաղվելու,— ասացի ես։

— Ինչո՞վ,— հետաքրքրվեց նա։

— Վաղը կիմանաս,— պատասխանեցի ես ու այս անգամ ինքս փախա նրանից։

Շուռ եկա. ընկերս դեռ ինձ էր նայում։ Մտածեցի, թե ինչպես կզարմանար վաղը...

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ԽԱՂԱՂ ԶՐՈՒՅՑ

ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



Ամառվա կեսօր է, և երկու մարդ, որ հենց նոր են չայխանեում իրար հանդիպել, նստել են դեմ-դիմաց, թեյ են խմում ու խաղաղ զրուցում:

Վերևում երկնքի կապույտը շոգ է, ներքևում էլ շոգ է, այնքան է շոգ, որ թվում է, թե ծառերի տերևները հիմա կհորանջեն:

— Հա, հայրիկիս ասեմ,— ասում է երկուսից մեկը. նա երիտասարդ է, բեղերը նոր են ծլել,— աշխարհում ինչե՛ր ասես, որ չեն պատահում:

Մյուսը ծերունի է, թեյը խմում է ափսեով, ճակատի քրտինքը մատով շպրտում է գետնին և չիբուխ է ծխում:

— Ի՞նչ է պատահել,— ուղտի հանգստությամբ հարցնում է նա։

— Հայրիկիս ասեմ,— ասում է երիտասարդը,— սրանից ուղիղ հինգ տարի առաջ, Մողանի անապատով գնում էինք Մարաղա...

Ծերունին մտքում ասում է, որ Մուղանի անապատով ոչ ոք Մարաղա չի գնում և բեղերի ու մորուքի արանքում կամացուկ ժպտում է:

— Հա: Մեր քարավանում մի դերվիշ կար, ո՞վ գիտի, երևի հարյուր տարեկան կլիներ: Երեկոյան մոտ էր; այն, ինչ-որ մենք տեսանք, հայրիկ, աստված չանի, որ դու տեսնես, հորիզոնում եզան չափ մի առյուծ տեսանք: Առյուծ եմ ասում՝ բաշը ցցված, ատամները չռած, պոչը տնկված: «Ամա՛ն,— ասաց քարավանապետը,— ուղտերս կորա՛ն, էս անտերը հիմա մեզ բոլորիս հողմացրիվ կանի»: Որքան մարդ կար ուղտերի վրա, թափվեց ավազին, վախից բոլորն սկսեցին զկռտալ, լսու՞մ ես, հայրիկ:

Ծերունին գլխով արեց, թե լսում եմ, ասա:

— Հա. հայրիկիս ասեմ, մեր մեջ միայն այդ հարյուր տարեկան դերվիշը մնաց ոտքերի վրա: «Ես դրա հախիցը կգամ,— ասաց նա,— սիրտներդ պինդ պահեք»: Այն, ինչ որ տեսանք, հայրիկ, կարծես երազ էր: Դերվիշը ավազների վրայով գնաց առյուծին ընդառաջ: Մի տասնհինգ-քսան ոտնաչափից առյուծը ցատկեց դերվիշի վրա, ու մենք էլ ոչինչ չտեսանք: Երբ փոշին խաղաղվեց, մեկ էլ ի՞նչ տեսնենք, դերվիշը գալիս է՝ առյուծի մորթին շալակը գցած, մի ձեռքին՝ առյուծի գլուխը, մյուս ձեռքին՝ ոտներն ու պոչը: Շվարել մնացել էինք: Առաջինը քարավանապետը վեր կացավ ուղտերի արանքից և, թուքը կուլ տալով, հարցրեց. «Դերվիշ բաբա, բա էնի՞քը... Առյուծն ի՞նչ եղավ»: Հարյուր տարեկան դերվիշը շատ հանգիստ պատասխանեց. «Հե՜չ, կերա պրծա, էս էլ բերել եմ, որ գիշերը խաշ դնենք»: Նա առյուծի գլուխը, ոտներն ու պոչը դրեց ավազին:

Երիտասարդը, երբ պատմությունն ավարտեց, մի տեսակ հպարտության զգացումից ժպտաց, կարծես առյուծին ինքն էր կերել:

— Բա՛, էսպես բանե՛ր, հայրիկ:

Ծերունին չիբուխը մի քանի անգամ խփեց գետնին՝ մոխիրն ու մարմրող կայծերը թափելու համար և միայն մի բառ ասաց.

— Սու՛տ է:

Երիտասարդը նստած տեղում ձգվեց.

— Այսինքն՝ ի՞նչն է սուտ:

Ծերունին նայում էր նստած տեղում ձգված երիտասարդի աչքերին և այնտեղ՝ խորքերում տեսնում էր անհեթեթ հանցանքում բռնված մարդուն: Ծերունին ախ քաշեց և ասաց.

— Երիտասարդ, այն, ինչ որ դու հիմա պատմեցիր՝ սուտ է:

Երիտասարդն արդեն չարացավ:

— Սուտը դու ես, հայրիկ: Ես քեզ պատմեցի

սյն, ինչ որ էս անտեր աչքերով եմ տեսել. սրա-
նից հինգ տարի առաջ, Մողանի անապատով մենք
գնում էինք Մարաղա... Դերվիշը եթե հարյուր
տարեկան չլիներ, մի իննսուն կլիներ... Առյուծը...
կլուխը... պոչը... ի՞նչ է, այս բոլորը սու՞տ է։
— Սո՛ւտ է,— Նորից հանդարտ ասաց ծերունին։
Երիտասարդը պոկվեց տեղից, չարացած նայում
էր խոնարհ ծերունուն. հետո ձեռքը թափ տվեց,
թքեց ինչ-որ տեղ և չայխանի ծառուղիով գնաց։
Հիմա ծերունին նայում էր հեռացող երիտա-
սարդի մեջքին. Նորից լցնում էր չիբուխը, բեղե-
րի և մորուքի արանքում կամացուկ ժպտում էր
ու ինքն իրեն ասում. «Ախր, այդ սուտը հինգ
տարի առաջ ես եմ հորինել, իմ լա՛վ, իմ անգո՛րդ
ջահել. հիմա դու եկել ես կարճ ճանապարհներով
և ուզում ես սուտը փաթաթել ստի՞ն...»



## ՄԵՐ ԲԱԿԸ

ՎԱՀԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Վը՛գ...գ... հո՛պ... սահեցինք,
Արագ ոտքի կանգնեցինք։
Տը՛պ-տը՛պ, բարձրացանք,
Նորից ներքև սլացանք։

Սա բլուրն է՝ փայտե սար,
Ա՛յ, այն ծառին հավասար.
Եկեք դուք էլ սահեցեք,
Մեզ մոտ ուրախ խաղացեք։

Շարքով-կարգով խումբը մեր
Բարձրանում է վեր ու վեր...
Մենք խաղում ենք, հա՛ խաղում,
Ընկնում, ելնում, ծիծաղում։

Ծիծաղում ենք՝ հա՛-հա՛-հա՛,
Ունենք բլուր, տե՛ս, ահա...
Հետո կանենք ձյունե սար՝
Մեր կտուրին հավասար։

Վը՛գ...գ... հո՛պ... կսղղանք,
Ուրախ, զվարթ կխաղանք...
Թող ձյուն շատ գա՝ սարեսար,
Ցուրտ չի լինի մեզ համար։

## ՍՊԱՍՈՒՄ ԵՄ...

ԳԱՍՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Մանուկները կարոտով
Նայում են գորշ ամպերին.
Ջմեռ պապիկը շուտով
Երկնքից ձյուն կբերի։
Արտակն առած դահուկներ՝
Բակն է իջել անհամբեր։
Տատիկը թե.—Ա՛յ Արտակ,
Ինչո՞ւ ես զուր իջել բակ,
Չե՞ս տեսնում, որ ձյուն չկա։
— Ոչի՛նչ, ոչի՛նչ, տատի ջան,
Սպասում եմ, մինչև գա...



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

դասավանդում է աշխարհի չեմպիոն
ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ



## ՈՒԺԵՐԻ ԳԵՐԱԶԱՆՑՈՒԹՅՈՒՆ՝ ԽԱՂԱՏԱԽՏԱԿԻ ՎՃՌԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍՈՒՄ

Խաղի ընթացքում հաճախ անշարժ վիճակում գտնվող ֆիգուրը ենթարկվում է հարձակման, որովհետև նա կաշկանդված է լինում անկյունագծով, ուղղաձիգով կամ հորիզոնականով: Կաշկանդված ֆիգուրի շուրջը ծավալվում է պայքար, որի ելքը վճռում է ուժերի հարաբերակցությունը: Գրոհող ուժերի գերակշռությունը պաշտպանվողների նկատմամբ սովորաբար հանգեցնում է հօգուտ ակտիվ կողմի: Իսկ գրոհի և պաշտպանության ուժերի հավասար լինելու դեպքում՝ խաղատախտակի վրա պահպանվում է հավասարակշռություն:




1. Фе3 քայլով սպիտակները նախապես սև նավակին զրկում են շարժունակությունից, իսկ հետո մոտեցնելով մյուս ֆիգուրները՝ վերցնում են այն: Նման դեպքերում անհրաժեշտ է ճիշտ հաշվել, թե քանի ֆիգուր կարող է գրոհել և քանիսը՝ պաշտպանել գրոհված օբյեկտը: Ուշադրություն դարձրեք. այստեղ վճռական դերը խաղաց այն հանգամանքը, որ նավակը շարժունակությունից լրիվ զրկված էր, որովհետև փակում էր արքային: Պատկերացնենք, որ b6-ի վրա կանգնած լիներ սև թագուհի: Այդ դեպքում նույնպես կստացվեր կաշկանդում, սակայն ոչ լրիվ: Այսպես, նավակը կարող էր c4 գնալ՝ հայտարարելով շախ: Դա շատ կարևոր և այնպիսի մի տակտիկական միջոց է, որին հաճախ են դիմում, երբ ֆիգուրի կաշկանդումը ըստ էության երևակայական է, քանի որ նա կարող է նահանջել՝ գըրոհելով հակառակորդի առավել արժեքավոր ֆիգուրի վրա:




Համոզվեցեք, որ սևերը կարող են խուսափել նյութական կորուստներից: Ուժերի գերազանցությունը «ռազմաճակատի» վճռական տեղամասում չպետք է հաշվել լոկ թվաբանորեն: (Իմ երեք ֆիգուրը գրոհում են, իսկ հակառակորդը կարող է պաշտպանվել միայն երկուսով և այլն: Չպետք է մոռանալ ֆիգուրների համեմատական արժեքների մասին): Որոշ պաշտպանություններ լինում են ոչ ռեալ, իսկ մյուսները կարող են լիկվիդացվել կամ կասեցվել հակառակորդի կողմից:




Թվում է, թե սև նավակը պաշտպանված է միանգամայն բավարար: Սակայն սպիտակները f5-ի վրա վերցնելով թագուհուն, նավակին զրկում են պաշտպանությունից, իսկ այնուհետև՝ վերցնում: Եթե սև արքան e7 փոխադրենք, ապա 1. Թ:f5 քայլին կհետևի Ֆe2+ (միջանկյալ հարձակում ավելի ար-

ժեքավոր ֆիգուրի վրա) միայն հետո 2... Զ: f5, պահպանելով մեկ ավելորդ նավակ:

Ահա մի օրինակ վերացարկման (հեռացման) թեմայով:




Այստեղ սպիտակները ձգտում են նպատակին 1. Նf7 + քայլով, սև արքային հեռացնելով թագուհու պաշտպանությունից: 1... Ա: f7 2.Թ: d7 քայլերից հետո սպիտակները վճռական առավելություն ունեն:




Այստեղ մենք գործ ունենք վերացարկման այլ բարդ դեպքի հետ: Սև արքան գամվել է d5 զինվորի պաշտպանությանը: Առաջ շարժելով եզրային զինվորը, սպիտակները սև արքային ստիպում են հեռանալ իրենց զինվորներից՝ 1. a4 Աc6 2.a5 Աb5 3.Ա:d5 Ա:a5 4.Ա:e4 և այլն: Նման ձև հաճախ է հանդիպում զինվորային խաղավերջերում:






— Վերոնի՛կա, դու ջերմությո՞ւն ունես,— հարցրեց մորաքույրը:

— Այո՛, քառասուն աստիճան:

— Քառասո՞ւն,— զարմացավ մորաքույրը:

— Այո,— պատասխանեց Վերոնիկան,— մայրիկն ասաց, որ ջերմությունս երեսունյոթ ու երեք է, իսկ դա կանի քառասուն:

Հարևանը մինչև ուշ գիշեր գրամոֆոն էր նվագում: Փոքրիկ Պետերը թխկթխկացրեց դուռը և ասաց.

— Ձե՞ք կարող արդյոք մի քանի ժամով մեզ տալ ձեր գրամոֆոնը:

— Այս ուշ գիշերին ուզում եք պարե՞լ:

— Ո՛չ, ուզում ենք քնել...



Փոքրիկ Հանսը մեխակ բերեց տուն:

— Որտեղի՞ց,— հարցրեց մայրը զարմացած:

— Պարոն Շմիդտի պարտեզից:

— Եվ այդ մասին գիտե՞ պարոն Շմիդտը:

— Իհարկե, մայրիկ, նա բավական ժամանակ հետևիցս էր ընկել:

Գերմաներենից թարգմ. ՌԱՖԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



— Ես վերջերս քիչ մնաց վախից մեռնեի. զբոսնում էի անտառում և հանկարծ տեսա...օձ:

— Եվ ի՞նչ:

— Ոչինչ: Ես ավելի լավ նայեցի և տեսա, որ դա հասարակ փայտ է:

— Իսկ ինչո՞ւ այդպես վախեցաք:

— Որովհետև այն փայտը, որ ես պոկեցի օձին խփելու համար, օձ էր:

— Ինչո՞ւ քո այգում խրտվիլակ չկա:

— Ինչ կարիք կա. առանց այն էլ ես ամբողջ օրը տանն եմ:

Ուսուցիչ. Ո՞վ կասի, ինչո՞վ է ուղտը տարբերվում մյուս կենդանիներից: Ի՞նչ ունի ուղտը, որը չունի և ոչ մի կենդանի:

Աշակերտ.— Ուղտի ձագ:

Ռուս. թարգմ. ՕՎՍԱՆՆԱ ՄԻՋՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ*
*(«Նկուղի աստիճանների վրա» պատմվածքի նկարազարդումներից)*

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝

*Մեր հյուրն է Լենինգրադի «Կոստյոր» ամսագիրը։*

## ԽԱՉԲԱՌ

*Շրջանակներում եղած գծիկներից սկսելով՝ ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ ամեն մի թվանշանի շուրջը գրեք չորս տառից բաղկացած բառեր։*

*1. Հայկական ֆուտբոլի թիմ։ 2. Աշխարհահռչակ պատկերասրահ՝ Ֆրանսիայում։ 3. Գետ՝ Հարավսլավիայում։ 4. Կուրորտային քաղաք՝ Սև ծովի ափին։ 5. Հայկական կինոնկար։ 6. Դանդաղաշարժ կենդանի։ 7. Դերբերգ։ 8. Ջ. Վերդիի օպերաներից։ 9. Գետ՝*




*Արևելյան Սիբիրում։ 10. Շեքսպիրի «Օթելլո» ողբերգության գործող անձերից։ 11. Գիշատիչ կենդանի։ 12. Ծաղկի տեսակ։ 13. Երաժշտական ձայնանիշ։ 14. Հ. Իբսենի պիեսներից։ 15. Քաղաք՝ Հնդկաստանում, որտեղ գտնվում է «Աշխարհի հրաշալիքներից»*



*մեկը՝ Թաջ-Մահալ մզկիթ-դամբարանը։ 16. «Ժիզել» բալետի հեղինակը։*

*Կազմեց ԱԼԲԵՐՏ ՄԿՐՏՉՅԱՆԸ*

## ԽՆԴԻՐ — ԿԱՏԱԿՆԵՐ

*1. Երկու աքաղաղ իրենց ձայնով կարող են արթնացնել հինգ մարդու, քանի՞ աքաղաղ է պետք 20 մարդ արթնացնելու համար։*

*Լենինական մեկնող գնացքը ժամը 12-ին դուրս եկավ Երևանից՝ ժամում 60 կմ արագությամբ։ Նույն ժամին մեկ ուրիշ գնացք դուրս եկավ Լենինականից և շարժվեց Երևանի ուղղությամբ. սրա արագությունը կազմում էր ժամում 50 կմ։ Իրար հանդիպելիս, գնացքներից ո՞րը ավելի հեռու կլինի Երևանից։*

*Առաջարկ ՎԱՐԴԳԵՍ ՓԻՆԱՋՅԱՆԸ*




Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 10721։ Պատվեր՝ 2014 Տպաքանակ՝ 13 700։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 4/XII 1964 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։
Գինը 20 կ.






## ԱՂՋԵՏ ԺԱՄԻՆ

Քանի՞ եռանկյունի ունի այս պատկերը:

Առաջարկ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ

Այստեղ կա 16 սափոր: Փորձիր դրանք դասավորել այնպես, որ թե՛ ուղղահայաց, թե՛ հորիզոնական և թե՛ անկյունագծերի 4 սափորների թվերի գումարը հավասար լինի 30-ի:

Առաջարկ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ





## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ի՞նչ հսկա է հաղթահասակ,
Ունի շորեր տեսակ-տեսակ.
Բայց ինքը չի հագնում երբեք.
Ամառ-ձմեռ կանգնած է մերկ:

Այն ի՞նչն է, որ կմնա լուռ,
Թեկուզ հազար կտոր անես.
Բայց դու ինքդ հոնգուր-հոնգուր
Նրա վրա լաց կլինես:

Այն ի՞նչ կամուրջ է արդյոք,
Որ սոսկ հեռվից ենք տեսնում
Եվ ոչ նրա վրայով,
Ոչ էլ տակով ենք անցնում:

Թռչուն է անթև
Ու թափառական.
Ոչ գույն, ոչ էլ ձև
Ունի մշտական:

Մի փոքր գլուխ բռնածին,
Ով ցանկանա՝ կփչի.
Կռապանա՝ ինչ սառն է,
Ինչ որ տաք է՝ կասաչի:

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

## ԻՆՉՊԵՍ ԵՐԿԱՐԱՑՆԵԼ ՏՈՆԱԾԱՌԻ ԿՅԱՆՔԸ

Մոտենում են ձմեռային արձակուրդները՝ ուրախ խաղի ու հանգստի, երգի ու պարի օրերը: Արձակուրդների բոլոր օրերին կշողշողան տոնածառի գույնզգույն կրակները: Բայց արի ու տես, որ տոնածառը մի երկու օր սենյակում մնալուց հետո սկըսում է չորանալ, տերևներն ըսկըսում են թափվել: Մինչդեռ կարելի է այնպես անել, որ եղևնին ավելի երկար դիմանա:

Երեք լիտր ջրի մեջ բաց արեք 5 գրամ լիմոնի աղ, 6 գրամ ժելատին և 16 գրամ մանրած կավիճ: Տոնածառը լուծույթի մեջ դնելուց առաջ, կտրեք ցողունի ծայրը սուր դանակով, այնպես, ինչպես ցույց է տրված նկարում, որպեսզի լավ բացվեն ծակոտիները:

Լուծույթը ներծծելով, տոնածառի տերևները երկար ժամանակ չեն թափվի: Միայն երբեմն-երբեմն ավելացրեք լուծույթը, որպեսզի ամանի միջի ջուրը չըպակասի:



# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

«ԾԱՌԵՐ»
ԳՈՂՈՍՅԱՆ ՀՐԱՉԻԿ Մեղրի, 7 տարեկան





«ՄԵՐ ԲԱԿՈՒՄ»
ՔՅՈՒՐՔՉՅԱՆ ԱՐՄԵՆ
Երևան, 6 տարեկան



«ԸՆԿԵՐՈՒՀԻՆԵՐ»
ՔՅՈՒՐՔՉՅԱՆ ԼՐԱ
Երևան, 8 տարեկան

Ինդեքս 77806